# Խաղաղություն



ՀՈՎՀ. ՇԻՐԱԶ　　　Նկ. ՀՈՎՀ. ՇԱՎԱՐՇԻ



Առվի եզերքին,
Իմ բալիկն անզին
Ջրաղացիկ է շինում—խաղալիք,
Անիվիկն ահա պտտվեց լռիկ։
Նայում եմ լռին
Նրա խաղերին՝
Հիացքիս միջից կուզեմ միտք անել՝
— Ինչպե՞ս կարող է պատերազմ լինել։

Եվ ահա անզին
Բալիկս կրծքին
Մի աղավնի է փայփայում անձայն,
Իր թաթիկի մեջ կուտ տալիս նրան.
Ու ես դեռ նայում,
Մտքով փայփայում,
Նրանց մեծ սրտով կուզեմ միտք անել՝
— Ինչպե՞ս կարող է պատերազմ լինել։

Եվ այսպես, հայրե՛ր,
Որքա՜ն մանուկներ
Աղավնիներ են այժմ թռցնում,
Աղավնու թևով դպրոց սլանում,
Աղավնու նման կանչում աշխարհին՝
— Օ՜, պաշտպանեցեք աղավնիներին...
Ու ես նրանց մոր
Սրտով վիրավոր՝
Դարերով կուզեմ նույն միտքը անել՝
— Ինչպե՞ս կարող է պատերազմ լինել..




*Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 2

ՓԵՏՐՎԱՐ

1951 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 23-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Փառք մեծ ՍՏԱԼԻՆԻՆ,

Գերագույն Սովետի համաժողովրդական դեպուտատին, մեր հզոր Հայրենիքի առաջին ընտրյալին, մեր սիրելի ուսուցչին, կոմունիզմի հանճարեղ առաջնորդին.



Թբիլիսիի Բերիայի անվան հրապարակը:

# ՈՂՋՈՒՅՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆԻՆ

Փետրվարի 25-ին լրանում է Սովետական Վրաստանի 30 տարին:

Բոլշևիկների պարտիայի ղեկավարությամբ վրաց ժողովուրդը երեսուն տարվա ընթացքում հսկայական նվաճումներ է ձեռք բերել տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառներում: Բարգավաճել են ռեսպուբլիկայի քաղաքներն ու գյուղերը, ծածկվել էլեկտրական ցանցով, կառուցվել են բազմաթիվ գործարաններ ու ֆաբրիկաներ, դպրոցներ, կուլտուրայի օջախներ: Գեղեցկացել, հրաշակերտ շենքերով, կանաչով է զարդարվել ռեսպուբլիկայի մայրաքաղաք Թբիլիսին: Վրաստանի աշխատավորները սովետական ժողովուրդների համերաշխ ընտանիքում անխոնջ պայքար են տանում կոմունիզմի վերջնական հաղթանակի համար: Այդ պայքարի ակտիվ մասնակիցներն են նաև Վրաստանի պատանի պիոներները:

Մենք՝ Հայաստանի պիոներներս, մեր ջերմագին ողջույնն ենք հղում վրաց ժողովրդին, Վրաստանի պիոներներին և նրանց այս ցնծալի տոնի առթիվ գոչում ենք. «Լենինի—Ստալինի գործի պայքարին՝ եղի՛ր պատրաստ»:

# ԱՌԱՋԱՎՈՐ ՋՈԿԱՏԻ ՀԱՎԱՔՈՒՅԹԸ

Բ. ՍԵՅՐԱՆՅԱՆ

Լուսանկ. Վ. ՉԵՐԿԱՍՈՎԻ

Մեծ ու գեղեցիկ է Թբիլիսին։ Ամեն անցնող տարի մի նոր գույն է ավելացրել նրա տեսքին ու հնադարյան քաղաքն այսօր նայում է երեսնամյա երիտասարդի կայտառությամբ։ Ասես փոխվել է նաև քաղաքի կլիման։



Երկաթուղային տրանսպորտի աշխատողների երեխաների գեղարվեստական դաստիարակության տունը Թբիլիսիում:

Խոր ձմեռ է արդեն, բայց ջերմ, արևոտ օրերը, զուլալի երեկոները, մշտադալար ծառերն ու զարդաբույսերը, սարյակների պես ճռվողող դպրոցականների ծիծաղը, խորը ձմեռից քեզ փոխադրում են ապրիլ։

Գարնան շունչը ոչ մի տեղ այնպես ջերմ ու որոշակի չի զգացվում, ինչպես Բերիայի անվան Պիոներական պալատում, նրա դահլիճների կամարների տակ, նրա շուրջը փռված փարթամ այգում, ֆիզկուլտուրայի կոկ ու մաքուր հրապարակում։

Ահա այս երեկո էլ, երբ փողոցներում մեկիկ-մեկիկ վառվեցին լույսերը, քաղաքի բոլոր դպրոցներից դեպի պալատ շտապեցին հարյուրավոր պիոներներ։ Նրանք գալիս են մասնակցելու պիոներական լավագույն ջոկատներից մեկի՝ Թբիլիսիի Ստալինի անվան № 1 դպրոցի իններորդ ջոկատի հավաքույթին։

Հավաքույթի թեման է՝ «Գորին — մեծ Ստալինի ծննդավայր»։

Նրանցից շատերն անձամբ գիտեն իններորդ ջոկատի պիոներներին՝ այդ կարգապահ, շնորհալի պատանիներին, որոնք ամեն ինչ անում են իրենց դասարանի ուսման որակի բարձրացման, պիոներական ինքնագործունեության զարգացման համար։ Ուստի չեն էլ կասկածում, որ հավաքույթն անցնելու է հետաքրքիր։

Իններորդ ջոկատի անդամներն ասես նախօրոք զգացել են այդ և իրենց դաստիարակչուհի Ելենա Նիկոլայշվիլու, ջոկատավար Նոդար Դևիձեի օգնությամբ ամեն ջանք գործ են դրել՝ ընկերների հույսերն արդարացնելու համար։

Վրա է հասնում հանդիսավոր րոպեն։

Մթնում է դահլիճը։ Վետվետում, բոցկլտում են հրեղեն լեզվակները։

Ամբողջ ջոկատը բոլորել է խարույկի շուրջը:

... Գիշեր է: Լռություն: Քնած է Գորին: Ամպերի մեջ նիրհում է հինավուրց ամրոցն իր ժայռեղեն պարիսպներով:

Այդ խորհրդավոր պահին, երաժշտության մեղմ հնչյունների տակ, մի ինչ-որ տեղ մեկը դանդաղ ճոճում է օրորոցն ու ծորացող ձայնով երգում քաղցր «Իավ նանան» — օրորոցի երգը:

Սկսվում է պիոներ Ամիրան Ջիմշելաշվիլու զրույցը՝ Գորիի անցյալի մասին:

— Հին, շատ հին պատմություն ունի Քարթլին՝ ժամանակակից Վրաստանի սիրտը, — ասում է պատանին:
— Հին է նաև Քարթլիի մայրաքաղաք Գորին՝ իր պատմական ամրոցով, իր մեջ խաչաձևվող քարավանային ճանապարհներով, որոնք գալիս էին Սև ծովի ափերից ու գնում դեպի Ասիայի խորքերը, գալիս էին Փոքր Ասիայից, գնում դեպի Կովկասյան լեռները...
Հնագետների պեղումները ցույց են տալիս, որ Գորին գոյություն է ունեցել մեր թվականությունից շատ առաջ: Հայտնաբերված բրոնզե, երկաթե, քարե, ոսկրե իրերն ու գործիքները հազարամյակների հնություն ունեն...

Պատանին պատմում է օտարերկրյա նվաճողների դեմ վրաց ժողովրդի մղած դարավոր պայքարի մասին և այդ պայքարում Գորիի ու գորեցիների կատարած մեծ դերի մասին:

Նրա զրույցը լսվում է հիացմունքով: Նա Գորիի մասին տեղեկություններ է քաղել բազմաթիվ գրքերից, մեկնել է Գորի, ծանոթացել է տեղի ազգագրական թանգարանի նյութերին ու էքսպոնատներին: Մի խոսքով զրույցին նախապատրաստվել է անթերի: Դպրոցը, պիոներական կազմակերպությունը, ծնողները Ամիրան



Հարյուր բնակարանանոց նոր բնակելի շենք Թբիլիսիի Սովետական Միության հերոսների հրապարակում:

Ջիմշելաշվիլու մեջ դաստիարակել են այնպիսի պարտաճանաչություն, կարգապահություն և պատասխանատվություն դեպի հանձնարարված գործը, որ նա ուրիշ կերպ չէր էլ կարող վարվել:

...Ահա փոխվում, պայծառանում են գույները: Փոխվում, պայծառանում

է նաև երաժշտությունը։ Ամիրան Ջիմշելաշվիլուն փոխարինում է պիոներ Ռոստոմ Խոմերիկին՝ սև, խոշոր աչքերով մի գեղեցիկ պատանի։ Խարույկի բոցն ասես խաղում է նրա աչքերի հետ, շողում վզկապի վրա։

Նրա թեման է «Նոր Գորին»։ Դա նախորդ զրույցի անմիջական շարունակությունն է։

Ռոստոմն իր զրույցն սկսում է գորեցիների ռևոլյուցիոն պայքարի պայծառ էջերից։ Նա պատմում է այն մասին, թե ինչպես դեռ Թբիլիսիի հոգևոր սեմինարիայում սովորելիս ընկեր Ստալինը երբեք աչքաթող չէր անում Գորին։ Թե ինչպես Գորի արձակուրդ գնացող իր ընկերներին մեծ Ստալինը գաղտնի թռուցիկներ էր տալիս, որպեսզի նրանք գիշերով փակցնեն տների պատերին և պայքարի հանեն աշխատավորությանը։

— Այժմ Գորին հայտնի է ոչ իր ամրոցով, ոչ էլ այն ճանապարհներով, որոնց մասին պատմեց իմ ընկեր Ամիրան Ջիմշելաշվիլին։ Հիմա այդ նոր, գեղեցիկ քաղաքում խաչաձևվում են աշխարհի բոլոր ծայրերից եկող հազարավոր այցելուների ճամփաները, որոնք գալիս են տեսնելու մեր հարազատ հայր և ուսուցիչ մեծ Ստալինի ծննդավայրը։ Ընկեր Ստալինի Տուն-Թանգարանի մոտ իրար են հանդիպում հնդիկն ու կորեացին, ֆրանսիացին ու դանիացին, չեխն ու չինացին, իրար են հանդիպում բազմաթիվ այլ ազգությունների ներկայացուցիչներ և եղբայրաբար սեղմում մեկ-մեկու ձեռքը։

Այնուհետև Խոմերիկին պատմում է նոր Գորիի բազմահարկ ու գեղեցիկ շենքերի մասին, պուրակների ու փողոցների մասին, քաղաքի նոր շինարարության ու նրա հեռանկարների մասին։

Առաջնորդի ծննդավայրի պիոներների նամակին է նվիրված Նոդար Կոբեշավիձեի զրույցը։ Ընկեր Ստալինին ուղղված այդ նամակը, որի մեջ Գորիի պիոներներն իրենց ջերմ սերը, երախտագիտության խոր զգացմունքն են հայտնում մեծ առաջնորդին և պարտավորվում սովորել էլ ավելի լավ, ամբողջ ռեսպուբլիկայի պիոներները ընդունեցին որպես իրենց կամքի ու զգացմունքի արտահայտությունը։

Պատանին քաղվածքներ է կարդում Գորիի պիոներների նամակից, ապա ավելացնում.



Ավագ ջոկատավար Էթերի Սրուսերիձեն քննարկում է հերթական հավաքույթի ծրագիրը։

— Ընկեր Ստալինը սովորել է գերազանց։ Մենք էլ պետք է հետևենք նրա օրինակին, որպեսզի դառնանք նրա արժանի թոռնիկները։

Ջոկատի պիոներներ Գուլու Կուպրավան, Վաժա Մոսիձեն, Բոնդո Նադիրաշվիլին հետաքրքիր քաղվածքներ են կարդում ընկեր Ստալինի դասընկերների և ուսուցիչների գրած հիշողություններից։

*
* *

Հայտարարվում է կարճատև ընդմիջում։ Հյուրերը ծանոթանում են ջոկատի անդամների պատրաստած մոդելներին, մակետներին, լույս ընծայած պատի թերթերին, որոնք բոլորն էլ նվիրված են հավաքույթի թեմային։

Արժե տեսնել, թե պիոներներ Անչաբաձեն և Նիկալայշվիլին ինչպիսի խնամքով ու սիրով են պատրաստել մեծ առաջնորդի Տուն-թանգարանի մակետը։ Հենց այդտեղ, Պիոներական պալատի աշխատողները խնդրում են՝ մակետներից մեկը մշտապես թողնել պալատում։ Ջոկատի անդամները սիրով համաձայնում են։

Հավաքույթի նախապատրաստմանն ու նոր Գորիին նվիրված պատի թերթերը ճաշակով է ձևավորել պիոներ Գավաշելին, որը շնորհալի նկարչի ձիրք ունի։ Այդ պատի թերթերից մեկում տպագրված է ջոկատի անդամ, պատանի պոետ Ավքսենտի Մեգրելիձեի ջերմաշունչ բանաստեղծությունը՝ նվիրված սիրելի Ստալինին։ Հյուրերից մեկը բարձրաձայն կարդում է այն, իսկ մյուսները սիրով լսում են։

Շուտով սկսվում է հավաքույթի գրական-երաժշտական բաժինը։ Այստեղ հանդես են գալիս ջոկատի երգիչները, պարողները, արտասանողները և իրենց անկեղծ, սրտահույզ կատարմամբ սաես մրցում մեկ-մեկու հետ։

Աղբյուրի քաղցր կարկաչի պես է հնչում պիոներ Վիկտոր Վեկուայի ձայնը, որն արտասանում է պոետ-ակադեմիկոս Ի. Գրիշաշվիլու՝ «Մեծ Ստալինին՝ փոքրիկ գորեցիներից» բանաստեղծությունը.

«Ողջ աշխարհն է քեզ սիրում,
դու մեր սրտին սիրելի,
Ի՜նչ կլինի, թանկագին, որ մի
անգամ գաս Գորի»։

Հապա երգը... Ի՜նչ աննման ձայն ունեն այս ջոկատի պիոներներ՝ Նոդար և



Իններորդ ջոկատի պիոներները պատրաստում են պատի թերթի հերթական համարը։

Բոնդո Նադիրաշվիլիները։ Նրանք եղբայրներ են, իրար շատ նման, ձայներն էլ միատեսակ։ Երգում են միշտ միասին և լավ են երգում։ Այս անգամ էլ հյուրերը հիացան նրանց երգած «Փառք Ստալինին» և «Օրոր» երգերով։ Ապա ամբողջ ջոկատը խըմբով երգեց «Առավոտ» սքանչելի երգը, որի խոսքերը հենց Գորիում, դեռևս պատանեկության տարիներին գրել է ընկեր Ստալինը։

«Վարդը սիրուն բերքը բացեց,
Մանուշակին ժպտաց անուշ.
Շուշանը հեզ քնից զարթնեց
Եվ օրորվեց հովից քնքուշ»։

Սկսվում է պարը։ Այստեղ արդեն փայլում է ջոկատի լավագույն պարող Գոգի Ութիաշվիլու շնորհքը։ Լեռնցու չերքեզկա հագած, նա նետվում է պարաշրջան և գիգզագում կայծակի պես։ Ի՜նչպիսի թափ, ի՜նչպիսի կորով կա նրա կատարած «Սվանական» և «Լեռնային» պարերի մեջ։

Իհարկե, միայն սրանով չի ավարտվում հավաքույթի գրական-երաժշտական բաժինը։ Այստեղ մենք չխոսեցինք «Կենդանի լրագրի» մասին, «Թվանշանների վեճը» հետաքրքիր ինսցենիրովկայի մասին, որոնք ուսանելի շատ բան տվեցին ներկաներին։

Հնչում է ջոկատավարի խրոխտ ձայնը։

— Պիոներներ, շարվել։ Զգաստ։ Պատվի առ։ Լենինի—Ստալինի գործի պայքարին՝ եղի՛ր պատրաստ։

— Մի՛շտ պատրաստ, — լսվում է միահամուռ պատասխանը։

Ներկաների բուռն՝ ծափահարությունների տակ դրոշակակիրները դուրս են տանում դրոշները։ Հավաքույթն ավարտվում է։ Բայց նրա թողած տպավորությունը երկար ժամանակ մնում է հանդիսատեսների սրտում։

Եվ իրոք։ Մի փոքրիկ կոլեկտիվ, ընդամենը 39 հոգի, բայց ի՜նչպիսի հարուստ ու բովանդակալից կյանք։ Այդ երեկո դժվար կարելի էր գտնել ջոկատի անդամներից գոնե մեկին, որ չփայլեր իր շնորհքով։ Նրանցից ամեն մեկը ջոկատի պատիվը համարում է իր պատիվը, օգնում, խրախուսում ընկերոջը՝ կոլեկտիվ հաջողության հասնելու համար։

Հենց այդ հաջողությանն էլ հասավ իններորդ ջոկատը։

* * *

Գիշեր էր։ Խաղաղվել էր Թբիլիսին. խաղաղվել էին նրա փողոցները։

Իններորդ ջոկատի պիոներներն ուրախ տրամադրությամբ ցրվում էին տները։ Նրանց հաջողությունը ակընհայտ էր։ Բայց այդ հաջողությունը չէր շլացնում, չէր հանգստացնում նրանցից ոչ մեկին։ Ընդհակառակը, նրանք արդեն մտածում էին հաջորդ հավաքույթի մասին, որ լինելու է «Մեծ Լենինի պատանեկությունը» թեմայով։ Նրանք երազում էին ուսման մասին, իրենց ապագայի մասին։

Ի՜նչ լավ է երազել, երբ գիտես, որ Հայրենիքդ քո երազներն իրագործելու բոլոր պայմանները կստեղծի։

# ՄՏԵՐՄՈՒԹՅԱՆ ՆԱՄԱԿՆԵՐ

*Անցյալ տարի Վրաստանի Գալի շրջանի Օկումի գյուղի երիտասարդ կոլխոզնիկները եկան Արտաշատի շրջան, Անաստասավանի առաջավոր կոլխոզի աշխատանքը տեսնելու, իսկ անաստասավանցիները գնացին Օկումի, նրանց փորձը ուսումնասիրելու։*

*Շատ կոլխոզներ ու գործարաններ միմյանց հետ կապված են սոցիալիստական մրցությամբ և մեծ հաջողությունների են հասնում իրենց գործում։ Նամակագրական և կենդանի կապ են պահպանում իրար հետ նաև բազմաթիվ պիոներական ջոկատներ ու դրուժինաներ։*

*Երևանի Ռուսթավելու անվան դպրոցի պիոներական դրուժինան վերջերս եղբայրական կապի սկիզբ դրեց Թբիլիսիի Ստալինի անվան դպրոցի պիոներների հետ։*

*Մեր ամսագրի այս համարում տպագրում ենք մտերմության այդ նամակները, որ փոխանակեցին ջոկատները։*

## ՍԻՐԵԼԻ ԸՆԿԵՐՆԵ՛Ր

Մեր ջոկատը պատրաստվում է եղբայրական Վրաստանի 30-ամյակին նվիրված հավաքույթին «Սովետական Վրաստանը 30 տարում» թեմայով։ Հավաքույթը հետաքրքիր և բովանդակալից անցկացնելու համար անհրաժեշտ է ձեր օգնությունը։ Մենք ցանկանում ենք, որ դուք պատասխան նամակում պատմեք ձեր ռեսպուբլիկայի արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրայի նվաճումների մասին։ Եղբայրական ռեսպուբլիկայի տոնը արժանավայել կերպով դիմավորելու համար, մենք կազմակերպում ենք ցուցահանդես նվիրված Սովետական Վրաստանի 30-ամյակին. ցանկանում ենք լույս ընծայել նաև ֆոտո-թերթ։ Դրա համար խնդրում ենք ձեզ ռեսպուբլիկայի գեղատեսիլ բնությունը և շինարարությունը պատկերող, աչքի ընկնող գործիչների և գրողների նկարներ և վրացական նոտայագրված երգեր ուղարկեք մեզ։

Խնդրում ենք՝ նամակում պատմել ձեր ջոկատի աշխատանքների՝ հետաքրքիր հավաքույթների, էքսկուրսիաների, արշավների գրքերի քննարկումների, ջոկատի ամենալավ ֆիզկուլտուրնիկի, մոդելիստի մասին։ Գրեցեք ձեր ջոկատի պիոներների ուսման և առաջադիմության մասին։

Այժմ մի քանի խոսք՝ մեր ջոկատի մասին։

Մենք սովորում ենք Երևանի Շ. Ռուսթավելու անվան դպրոցում։ Մեր ջոկատը բաղկացած է 29 հոգուց։ Նրանց մի մասը դրուժինայի խորհրդի երաշխավորությամբ արդեն ընդունվել է Լենինյան կոմերիտմիության շարքերը։ Մենք հետաքրքիր հավաքույթներ ենք ունենում, էքսկուրսիաներ կազմակերպում։ Ջոկատում կան լավ նկարիչներ, նվագողներ, ֆիզկուլտուրնիկներ։ Օրինակ՝ Գևորգյան Սերյոժան ըմբշամարտի մեր ռեսպուբլիկայի պատանի չեմպիոնն է, իսկ Թաիրյան Լյովան դրուժինայի չեմպիոնն է շախմատի գծով։ Հակոբյան Լյովան էլ լավ թավջութակահար է։ Կան նաև պարողներ։

Սիրելի ընկերներ, մենք ուզում ենք հետագայում ավելի ուժեղացնել կապը մեր և ձեր ջոկատների միջև, փորձի փոխանակում կատարել։

Սպասում ենք ձեր նամակին։

*Ռուսթավելու անվան դպրոցի 12-րդ դրուժինայի 2-րդ ջոկատի ջոկատավար Վ. ՊԱՐՈՆԻԿՅԱՆ*
*Ջոկխորհրդի նախագահ՝ Վ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ*



Թբիլիսիի տղաների № 1 դպրոցի իններորդ ջոկատի շախմատային խմբակի պարապմունքը։

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՋԵՐՄԱԳԻՆ ՈՂՋՈՒՅՆ

Ջերմագին ողջույն, թանկագին ընկերներ։ Մենք, արևաշող Վրաստանի մայրաքաղաք Թբիլիսիի Ստալինի անվան № 1 դպրոցի 9-րդ ջոկատի պիոներներս, ուրախությամբ ստացանք ձեր նամակը և սիրով ցանկություն ենք հայտնում ձեզ հետ նամակագրական և բարեկամական սերտ կապ ստեղծել։

Մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաքի պիոներները միշտ էլ սիրով են հիշում սիրելի Բերիայի խոսքերը այն մասին, որ «Աշակերտի հերոսությունն ու արիությունը գերազանց սովորելն է»։

Մեր դպրոցը կրում է մեծ Ստալինի անունը։ Վերջերս մենք անցկացրինք հատուկ հավաքույթ «Գորին — մեծ Ստալինի ծննդավայր» թեմայով։ Այդ հավաքույթի համար մենք պատրաստեցինք առաջնորդի Տուն-թանգարանի երեք մակետ, լույս ընծայեցինք երկու պատի թերթ։

Մեր ջոկատն ունի շնորհալի երգիչներ, պարողներ, նկարիչներ, արտասանողներ։ Ունենք երգեցիկ խմբակ, որի ղեկավարն է Վաժա Նադիրաշվիլին։



Իններորդ ջոկատի պիոներներ՝ Գ. Մրևլիշվիլին, Լ. Ելիձեն, Վ. Մոսիձեն, և Դ. Անչաբաձեն մեծ Ստալինի Տուն-թանգարանի և պիոներական ճամբարի մակետները պատրաստելիս։

Մեր պատանի կոնստրուկտորների խմբի ակտիվ անդամներից են Ջեմալ Անչաբաձեն, Գիա Մրևլիշվիլին, Վաժա Մոսիձեն։ Մեր ջոկատի շախմատիստներից դպրոցում առաջին տեղն են գրավում Գուրամ Գրիգոլիան և Վիկտոր Իմնաձեն։

Թանկագին ընկերներ, մենք արևային Վրաստանի պիոներներս այսուհետև նամակագրական և բարեկամական սերտ կապ պահպանելով ձեզ հետ, սիրով կգրենք ու կպատմենք մեր ջոկատի ուսման ու ինքնագործունեության մասին։ Սովետական Վրաստանի 30-ամյակի մասին ձեր խնդրած նյութերը, լուսանկարներն ու էքսպոնատները մենք շուտով կուղարկենք։

Ընդունեցեք մեր պիոներական ջերմագին ողջույնը։

Սպասում ենք ձեր պատասխանին։

Ստալինի անվան արական № 1 միջնակարգ դպրոցի 9-րդ ջոկատի պիոներների հանձնարարությամբ՝ ջոկատավար՝ ՆՈԴԱՐ ԴԵՎԻՁԵ

Ջոկատի խորհրդի նախագահ՝ ԻՐԱԿԼԻ ԽՈՄԵՐԻԿԻ

Քաղ. Թբիլիսի, 1951 թ. հունվարի 23.

# Եղբայրություն

ԳԻՈՐԳԻ ԿԱՃԱԽԻՁԵ

Հայրենիքը մեր լույսի աղբյուր,
Փառքի ամրոց է անպարտելի.
Շունչ է տալիս նա գարնանաբույր՝
Սխրանքներին մեր, երազներին:

Եղբայրությունն է օրենքն անխախտ,
Որ ուժ է տալիս հային, վրացուն.
Մենք Թբիլիսիում զգում ենք արդ
Խռհերն ու խինդը ուկրաինացու:

Զգում ենք, գիտենք՝ ի՞նչ է խորհում
Դպրոցից դարձող տղան տաջիկ,
Խինդով ենք հիշում, որ Ուրալում
Սահնակ է խաղում մի ռուս աղջիկ:

Հեռավոր Մինսկի դպրոցներից
Զանգի ղողանջը հասնում է մեզ.
Երջանիկ ուզբեկ պիոների
Երազն է ձուլվում երազին մեր:

Նրանց էլ շողն է մեր արևի,
Քոի կասկադն է գերում խինդով,
Մեր Թբիլիսին, մեր սարերի
Չքնաղ գարունը ջինջ, հոգեթով:

Հայրենիքը մեր նույնն է այսօր՝
Արևի, փառքի Երկիրը մեծ.
Նա եղբայրության խոսքն է հզոր
Աստղերի նման սփռել մեր մեջ:

*Վրաց. թարգմ.* ՀՈՎՀ. ԿԱՐԱՅԱՆ

# Փետրվարյան ԱՌԱՎՈՏ

(Սովետական Վրաստանի 30-ամյակի առթիվ)

ՀՌ. ՊՈՂՈՍՅԱՆ

Բացվեց մի օր Թբիլիսիում
Փետրվարյան լույս առավոտ.
Հեռուներում չէին լսվում
Ո՛չ թնդյուններ, ոչ էլ որոտ:

Նահանջել էր այդ գիշերով
Պարտված զորքը նենգ թշնամու.
Դեպի քաղաք ճաղթ քայլերով
Սովետական զորքն էր դիմում:

Ռազմիկների ժպտուն դեմքին
Այգաբացի ցոլքն էր խաղում,
Իսկ մարտական գլխարկներին
Հինգթևանի աստղն էր շողում:

Նոր արթնացող փողոցներում
Հնչում էին խրոխտ երգեր.
Ժողովուրդն էր դիմավորում
Ռազմիկներին իր անվեհեր:

Մանուկները թռչկոտելով
Վազում էին, փողոց ելնում.
Ժպտում պայծառ աչիկներով,
Մարտիկների կողքով քայլում:

Ու քայլելով նրանց կողքին,
Զգում էին, որ էլ երբեք
Ծնողների ուրախ դեմքին
Չի իջնելու վիշտն անհաբեկ:

Որ հարազատ Թբիլիսիում,
Փետրվարյան այս առավոտ,
Մի նոր կյանք էր սկիզբ առնում...
Ե՛վ խնդագին, և՛ արևոտ:

# ԱՆՄԱՀՈՒԹՅՈՒՆ

ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

Նկ. ԱՆԺ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

Լուսնի մահիկը կախվել էր անտառի վրա և թեթև կաթնալույսով ողողել սևաթույր սաղարթները: Մեղմորեն փչող գիշերային զեփյուռը բերում էր անտառի յուրահատուկ բուրմունքը՝ աշխուժով և ուրախությամբ լցնելով պատանի պիոներների սրտերը:

Պիոներները նորից հավաքվել էին գիշերային խարույկի շուրջը և երգում, պարում ու արտասանում էին, երբ երևացին գվարդիայի մայոր Գրիգոր Ավետիսյանն ու ճամբարի պետը: Բոլորը միանգամից լռեցին: Գիշերային խաղաղության մեջ



լսվեց միայն ծղրիդների դուրեկան երգը: Պիոներները ոտքի ելնելով միաձայն ողջունեցին սիրելի հյուրին:

— Ընկերնե՛ր,— սկսեց գվարդիայի մայորը,— այսօր իմ վերջին հանդիպումն է ձեզ հետ: Շատ բան կա պատմելու, բայց ո՞ր մեկը պատմես... Պատմելով չես սպառի Հայրենական Մեծ պատերազմի հերոսների, սովետական մարտիկների սխրագործությունները: Դուք շատ եք կարդացել Սովետական Բանակի ռազմիկների մասին և էլի կկարդաք: Այսօր ես ուզում եմ պատմել հայկական Մատրոսովի՝ Հունան Ավետիսյանի մասին, որին մահվանից հետո շնորհվեց Սովետական Միության Հերոսի կոչում:

Հունան Ավետիսյանը ծնվել է 1914 թվին Ջանգեզուրի Ծավ գյուղում: Նա ծայր աստիճան չքավոր ծնողներ է ունեցել և ստիպված է եղել բատրակություն անել գյուղի կուլակների մոտ: Նրա ընկերները պատմում են, որ Հունանն առույգ, կենսուրախ տղա էր և միշտ օգնում էր ընկերներին:

1930 թվին, երբ Ծավ գյուղում կոլխոզի հիմք դրվեց, առաջինը կոմերիտական Հունանն էր, որ ընտանիքով մտավ կոլխոզ:

Երբ 1941 թվին ծնվեց նրա անդրանիկ զավակը, Հունանն արդեն բանակում էր՝ իր հինգ եղբայրների հետ միասին:

1942 թվի դեկտեմբերին նա գրում էր կնոջը՝ «Արդեն հինգ ամիս է, որ գտնվում եմ ֆրոնտում: Թեև վերջերս վիրավորվեցի, բայց շուտով վերքերս կլավանան, և ես էլի կգնամ իմ վրեժը լուծելու թշնամուց»:

Դեռ վերքերը լրիվ չբուժած՝ Հունանը վերադառնում է զորամաս և իր ընկերների հետ միասին, իսկույն անցնում է մարտական խնդրի կատարմանը:

Հունան Ավետիսյանը շատ հերոսություններ է արել. ես ձեզ կպատմեմ միայն մի դեպք նրա մարտական կյանքից...

* * *

...Անձրևային խավար գիշերով անձայն ու անշշուկ, Կուբանի «Դոլգայա» լեռան բարձունքն էին գրոհում մի խումբ ավտոմատավորներ: Նրանց բոլորի առաջից քայլում էր մարզիկի կազմվածքով, թիկնեղ, թուխ ու առնական մի մարտիկ՝ ավագ սերժանտ Հունան Ավետիսյանը: Նրան հետևում էին կոմերիտական խիզախները:

Արդեն նրանք բավականին առաջացել էին սարն ի վեր, երբ թշնամին կարմիր, կապույտ, դեղին ու կանաչ հրթիռներ արձակեց՝ լեռան մատույցները լուսավորելու համար:

Հունանն ու իր ընկերները անմիջապես փռվեցին գետնին: Բայց թշնամին նկատել էր ստվերների շարժումը: Գերմանական գնդացիրները, հրականետները սկսեցին սանրել այն տեղամասը, որտեղ Հունանի գրոհային մարտիկներն էին պառկել:

— Տղե՛րք, շատ եմ խնդրում՝ վիրավորվելու դեպքում ձայն ու ծպտուն չհանեք, թե չէ բոլորս

էլ կմասնվենք,—նախազգուշացնում էր Հունանը։

Երբ տասնհինգ րոպե տևող կատաղի գնդակոծությունը դադարեց, գրոհային խմբի մարտիկները սողալով սկսեցին բարձրանալ սարն ի վեր։

Նրանք անվնաս անցան ականապատված դաշտերով և, մոտեցան հակառակորդի փշալարերի առաջին գծին, երբ երկինք սուրացին բազմերանգ հրթիռներ և ցրեցին գիշերային խավարը։ Երկնքից կախված գունավոր կանթեղները լուսավորեցին թշնամու պաշտպանության բոլոր մատույցները։ Գրոհայիններն անմիջապես պառկեցին լեռան թեք լանջին՝ թաց գետնի վրա։ Գնդակները սուլում էին նրանց գլխավերևում։

Լուսաբացը մոտենում էր։ Մինչ այդ հնարավոր չէր կտրել թշնամու փշալարերի առաջին երեք շարքը և մոտենալ նրա դզոտներին։

Գրոհային խմբի հրամանատար Ավետիսյանը որոշեց ցերեկն անցկացնել բարձունքի ճանապարհին և գրոհը շարունակել գիշերը։ Նա իր մարտիկներին հրամայեց շտապ խրամատավորվել՝ քանի դեռ լույսը չէր բացվել։

Առավոտյան եղանակը պարզեց։ Սպիտակ մշուշը կծկվեց, քաշվեց լեռան լանջերից։ Աշնանային արևը ողողեց լեռներն ու անտառները և հաճելի ջերմությամբ տաքացրեց Հունանին ու նրա կրտրիճներին։

— Վասիլ,—երկար լռությունից հետո ասաց Հունանն իր կողքի ընկերոջը,—իմ ծննդավայր Սյունիքում կա մի բարձր սար. Խուստուփ է կոչվում այդ սարը։ Ալեհեր հայրս ինձ միշտ ասում էր՝ «մարդ որ աշխարհ է եկել, սրտով պետք է բարձր լինի մեր այս Խուստուփի կատարի նման, ապրի ու մեռնի նամուսով»։ Ես հորս պատգամը կկատարեմ թեկուզ կյանքի գնով, բայց ֆաշիստական գերության չեմ մատնի ո՛չ հորս գերեզմանը, ո՛չ իմ բալիկին, ո՛չ իմ սիրելի ժողովրդին...

Կարճ տևեց ընկերների մտերիմ, սրտաբուխ զրույցը։ Սկսվեցին հրետանային ու ականանետային ահեղ համազարկերը։ Ամբողջ ցերեկը հողին մեխված՝ գրոհայինները սպասեցին մթնելուն։ Վերջապես հասավ ցանկալի ժամը։ Արևը մայր մտավ և մթությունը հետզհետե սկսեց թանձրանալ։

Սակայն ամբողջ գիշերը հիտլերականները լուսավորեցին ու կրակի տակ պահեցին «Դոլգայա» լեռան բարձունքը տանող իրենց պաշտպանագիծը։ Ավելի ուժեղացան հրետանային ու ականանետային համազարկերը, գործեցին զենիթային թնդանոթները։

Արճճի այդ տարափի միջով, փորսող տալով, ռազմիկներն արդեն մոտենում էին 137 բարձունքի լանջերին գտնվող թշնամու դզոտներին։ Հասավ վճռական գրոհի ժամանակը։ Ճիշտ այդ միջոցին ձախակողմյան դզոտից հիտլերականները կրակ բաց արին գրոհողների վրա։ Կատաղի ճարճատեցին գնդացիրներն ու ավտոմատները։ Հունանը սլացավ այն դզոտի վրա, որտեղից ուղիղ կրակում էր գնդացիրը։ Նա իրար ետևից մի քանի նռնակ նետեց այնտեղ։ Գնդացիրը լռեց։ Բայց մի ուրիշ դզոտից թշնամին անընդհատ գնդացրային հերթագարկեր էր բաց թողնում։ Իրենց հրամանատարի ետևից գնացող մարտիկները մի պահ տատանվեցին։ Դրությունն անելանելի էր։ Հենց այդ վճռական րոպեին թնդաց Ավետիսյանի առնական մարտակոչը.

— Տղե՛րք, իմ ետևից...

Այդ միջոցին ավագ սերժանտը լսեց մի ծանոթ ձայն.

— Ընկե՛ր հրամանատար, դուք վիրավորված եք...

Ավետիսյանը չպատասխանեց։ Նա ոչինչ չէր զգում, ո՛չ վերք, ո՛չ արյուն։ Նրա գլխում միայն մի միտք էր պտտվում՝ լռեցնել գնդացիրը, թույլ չտալ, որ նա խլի իր կտրիճների կյանքը, վիժեցնի հաղթանակը։

Հանկարծ նրա աչքին երևացին թշնամու գնդացրի կրակից գետին ընկած մարտիկները, իր



հարազատ ընկերները։ Սրբազան վրեժով վառվեցին վիրավոր հրամանատարի աչքերը։ Նա մի ակնթարթ դիտեց առյուծի նման կռվող իր ռազմիկներին։

— Տղերք,—գոռգոռաց նրա ձայնը,—այլևս այս դզոտը չի զործելու. հրամայում եմ, հանուն Ստալինի, առա՜ջ...

Եվ նա նետվեց դեպի դզոտը, մոտեցավ գնդացրի փողին, բռնեց և փորձեց թեքել նրա ուղղությունը։ Բայց չհաջողվեց։ Հունանն ամբողջ մարմնով թեքվեց գնդացրի փողի վրա և... և իր կրծքով փակեց հրակնատը... Փակվեց այն անցքը, որտեղից կրակում էր թշնամին։ Գնդակները ծակծկեցին հերոսի կուրծքը։ Ընդմիշտ լռեց Հունանի մարտակոչ ձայնը, լռեց և թշնամու գնդացիրը։

Իրենց սիրելի հրամանատարի մահը տեսնելով՝ մարտիկները սրընթաց առաջ նետվեցին և ոչնչացրին դզոտում գտնվող հիտլերականներին։

Իր ավագ սերժանտի դյուցազնական մահից ցնցված՝ դիվիզիայի հրամանատար գեներալ Սաֆարյանը գրել է ռազմաճակատի թերթում.

«Ընդմիշտ կպահպանվի հայ ժողովրդի քաջարի զավակ, մեր դիվիզիայի ռազմիկ Հունան Ավետիսյանի հիշատակը, որ Սովետական Միության լեգենդար հերոս Մատրոսովի նման իր մարմնով փակեց թշնամու դզոտի հրակնատը և հաղթությամբ ավարտեց գրոհը»։

Կուրանի Վերխնայա Բականսկայա ստանիցայի երախտապարտ կոլխոզնիկները հայ հերոսի հիշատակը հավերժացնելու համար կենտրոնական փողոցներից մեկը կոչել են Հունան Ավետիսյանի անունով։ Այդ ստանիցայի պիոներական ջոկատներից մեկն էլ այսօր կրում է հերոսի անունը։

* * *

Թամանյան 89-րդ եռակի շքանշանակիր Հայկական դիվիզիայի ամեն մի ռազմիկի սրտում միշտ վառ է Հունանի դյուցազնական կերպարը։ Ռազմիկ ընկերները ոչ մի օր չեն մոռանում նրան։ Ամեն երեկո, զորանոցում, երբ Ավետիսյանի ընկերները շարքի են կանգնում ստուգման համար, վաշտի ավագը խրոխտ և հուզված ձայնով արտասանում է.

— Սովետական Միության Հերոս ավագ սերժանտ Հունան Ավետիսյա՜ն...

Եվ խոր լռության մեջ լսվում է մի հուզիչ պատասխան, որ ալիքվելով անցնում է շարքերով մեկ, թափանցում սրտերի մեջ.

— Սովետական Միության Հերոս ավագ սերժանտ Հունան Մկրտչի Ավետիսյանը ընկավ քաջի մահով՝ գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված մարտերում...

* * *

Գվարդիայի մայոր Ավետիսյանը վերջացրեց իր զրույցը։ Մի պահ խոր լռություն տիրեց։ Ապա լսվեց ավագ ջոկատավարի ձայնը.

— Ճամբար, ուշքի՜, զգա՜ստ... Պատվի առ։ Ճամբարի դրոշը կբերեցնի պիոներ Աստղիկ Ներսիսյանը։

Հնչեց Սովետական Միության հիմնը և կարմիր դրոշը հպարտ ծածանվելով իջավ։ Այդ դրոշի համար էր, որ պայքարեց ու զոհվեց նախկին պիոներ Հունան Ավետիսյան



# Նվերը

ՀՐԱՉՅԱ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Նկ. Վ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Դուք գիտե՞ք, որ կա
Մի փոքրիկ նվեր
Ռևոլուցիայի
Մեծ թանգարանում,
Ինձ ամենից շատ
Նա է գրավել,
Ես երբեք, երբեք
Այն չեմ մոռանում...
Մեր մեծ Միության
Ինչ-որ մի վայրում,
Մի դպրոցական
Պատանի ընկեր
Բոլոր դասերն իր
Լավ է սովորում,
Եվ ստանում է
Միմիայն հինգեր:
Այսպես շարունակ
Մի քանի տարի
Գերազանցիկ է
Դառնում նա լրիվ,
Դասերը՝ փայլուն,
Վարքը՝ անթերի,
Իսկ՝ պիոներ
Ակտիվ ու ազնիվ:
Մեծ Ստալինի
Նկարն է կախված
Այդ պիոների
Սենյակի պատին
Եվ ամեն անգամ
Նա պատվի առած՝
Դիմում էր հուզված
Այդ թանկ նկարին.
—Խոստանում եմ քեզ
Մեր սիրելի հայր,
Գերազանց լինել
Ամեն մի տարի,
Որ դու զոհ մնաս
Ինձնից անպատճառ,
Ինչպես որ գործից
Իմ ծնողների:
Եվ պիոները
Մի գեղեցիկ օր,
Ուրախ ու հպարտ
Վճիռ է հանում—
Մեծ Ստալինին
Ուղարկել բոլոր
Թվանիշների
Թերթիկը փայլուն:
Եվ Առաջնորդը
Մի օր Կրեմլում
Թերթերի և այլ
Նամակների հետ,
Բացում է փոքրիկ
Թերթիկ մի փայլուն,
Գրված գեղեցիկ,
Պարզ ու գրագետ:
Կարդում է ժպտով,
Սրտանց հիանում,
Ապա կանչում է
Իր քարտուղարին.
— Սա պիտի պահել
Մեր թանգարանում
Եվ ցույց տալ բոլոր
Այցելուներին:
Որ բոլոր, բոլոր
Մանուկները մեր
Այս պիոներից
Առնեն օրինակ:
Եվ այն թերթիկը
Այդ օրից ի վեր
Թանգարան գնաց,
Մնաց շարունակ:
Դուք գիտե՞ք, որ կա
Մի փոքրիկ նվեր
Ռևոլուցիայի
Մեծ թանգարանում,
Ինձ ամենից շատ
Նա է գրավել
Ու ես մինչ հիմա
Այն չեմ մոռանում:






# Այսպես է աշխատում ԽԻՋԱԽՈՒՄԸ

Լուսանկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

Մեր մեծ հայրենիքում շնորհալի երեխաներ շատ կան։

Նրանց համար է, որ Սովետական կառավարությունը կառուցել է հրաշալի պալատներ, ակումբներ, ստեղծել է տեխնիկական կայաններ, գեղարվեստական դաստիարակության տներ։

Այս հիմնարկները մեր երեխաների ամենասիրելի վայրերն են, ուր գործում են բազմաթիվ ինքնագործ խմբակներ։ Դասերից հետո, երեխաներն այս խմբակներում խելացի կերպով են անցկացնում իրենց ազատ ժամանակը։ Նրանք ուսումնասիրում են մեր երկրի անվանի գիտնականների, կոնստրուկտորների, արվեստագետների հարուստ կյանքը և իրենց ստեղծագործություններով աշխատում են հետևել նրանց։

Մեր դպրոցականները ամենից շատ սիրում ու հետևում են հայրենի երկրի բնությունը վերափոխող Միչուրինի, ռադիոն հայտնագործող Պոպովի և մեր երկրի մյուս գիտնականների ու մեծ մտածողների օրինակին։

Պիոներներն ու դպրոցականներն իրենց սիրած վայրերում սովորում են և ստեղծագործում։ Նրանք ձգտում են դառնալ սովետական արժանավոր ու գիտակից քաղաքացիներ, մեծ հայրենասերներ և օգտակար լինել հարազատ հայրենիքին։

Այժմ տեսնենք, թե իրենց աշխատանքների մասին ինչ են պատմում մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաքի պիոներներն ու դպրոցականները։

Տպագրում ենք մեր ամսագրի խմբագրության հասցեով ստացված մի շարք նամակներ։



## Հետաքրքիր ՓՈՐՁԵՐ

Ես, Դոնարան, Ժենյան, Իրան պատանի միչուրինականներ ենք. մենք ծիրանի, դեղձի, սալորի շատ լավ տնկիներ ենք աճեցրել։ Մեր խմբակի բոլոր անդամները փորձադաշտ են գնում և ուսումնասիրություններ կատարում։ Մեր աշխատանքներում մեզ օգնում են ռեսպուբլիկայի լավագույն մասնագետներն ու գիտնականները։

Մի օր փորձադաշտ հրավիրեցինք Պտղաբուծական ինստիտուտի դիրեկտոր, դոկտոր-պրոֆեսոր Միրիմանյանին։ Նա սիրով ընդունեց մեր հրավերը, դիտեց նորատունկ ծառերը, կատարած պատվաստումներն ու ասաց.

— Հրաշալի՛ է, շարունակեցեք աշխատել և սովորել, ես ձեզ էլի նոր տնկիներ կտամ։

Պրոֆեսոր Միրիմանյանը մեզ շատ խորհուրդներ տվեց պտղատու ծառերի աճեցման և խնամքի մասին։ Իսկ դոկտոր-պրոֆեսոր Տեր-Սահակյանը մեզ հետ զրուցելիս ասաց.

— Կարտոֆիլը կարելի է ցանել նաև հունիս ամսին և ավելի շատ բերք ստանալ. փորձեցեք՝ տեսեք։



Պատանի միչուրինական Պետրոս Աբաջյանը իր աճեցրած ծառը խնամելիս:

Մենք այդ փորձը կատարեցինք և լավ բերք ստացանք: Փորձադաշտի աշխատանքները շատ են և հետաքրքրական: Մենք աճեցրել ենք բամբակ, խաղող, կաղամբ, տարբեր տեսակի ու տարբեր գույնի համեղ պամիդոր, տաքդեղ և գեղեցիկ ու հոտավետ ծաղիկներ: Ծաղիկների շատ սերմեր ենք ուղարկել Ռոստով, Խարկով քաղաքների պատանի միչուրինականներին:

Ակադեմիկոս Լիսենկոյի մեթոդով գարնանը մենք ցանեցինք աշնանացան ցորենի յարովիզացիայի ենթարկված և չենթարկված սերմեր: Յարովիզացիայի ենթարկված սերմը տվեց լիքը և լավ հասկ, իսկ չենթարկվածը միայն թփակալվեց: Մենք շարունակ հետաքրքիր փորձեր ենք անում պտուղների կամ ծաղիկների նոր տեսակներ ստանալու համար: Այս տարի փորձադաշտում մենք կկատարենք միչուրինյան նոր փորձեր, նոր ուսումնասիրություններ և կաճեցնենք պտղատու տնկիներ:

ՊԵՏՐՈՍ ԱԲԱՋՅԱՆ
(Սպանդարյանի անվան դպրոցի աշակերտ)



# ԻՄ ՆՊԱՏԱԿԸ

1950 թվականի օգոստոս ամիսն էր: Ես, Էմիլը և Յուրիկը պետք է մեկնեինք Մոսկվա, Միութենական մրցումներին մասնակցելու: Գնալուց առաջ մենք Սևանա լճում փորձարկեցինք մեր մոդելները: Փորձարկումն անցավ շատ հաջող և մենք ավելի ոգևորվեցինք: Մի քանի օրից հետո, արդեն հարազատ մայրաքաղաքումն էինք: Խիմկիում հավաքվել էին եղբայրական շատ ռեսպուբլիկաներից եկած երկու հարյուրից ավելի ծովային մոդելիստ: Ռազմածովային մինիստր ընկեր Յումաշևը բոլորին ողջունելուց հետո մոտեցավ մեզ: Նա խոսեց Էմիլի և Յուրիկի հետ, դիտեց մեր պատրաստած մոդելներն ու ասաց.

— Շատ լավ է, որ ձեզ մոտ՝ Հայաստանում զբաղվում եք այս գործով:

Մրցումներն սկսվեցին: Ութ առագաստանավի մոդելի հետ ես Մոսկվա—Վոլգա ջրանցքն իջեցրի նաև իմ մոդելը: Նա սկսեց ճեղքել ջուրը և առաջ շարժվել, ետևում թողնելով վեց մոդել: Իմ մոդելից առաջ էր միայն մեկը:



Ծովային մոդելիստներ՝ Գրիգոր Պայլոզյանը, Էմիլ Կրիշյանը, Ստյոպա Հարությունյանը, Արտուր Վեհապետյանը և Արտուր Հակոբյանը մոդելներ պատրաստելիս:

Այսպիսով ես գրավեցի երկրորդ տեղը: Քիչ հետո հայտնի դարձավ, որ Էմիլի գրահանավի մոդելը նույնպես երկրորդ տեղն է գրավել.

Միութենական մրցումներից պատվով դուրս գալուց հետո, ես սկսեցի մեծ սիրով զբաղվել ծովային մոդելիզմով:

Մեր փառապանծ Բանակի 33-րդ տարեդարձի պատվին այժմ ես պատրաստում եմ մի գծանավի մեծ մոդել: Մեր դպրոցում ես կազմակերպել եմ մոդելիստների խմբակ, որտեղ զանազան նավերի շատ մոդելներ ենք պատրաստել արդեն:

Իմ նպատակը որոշ է: Ես ծովային նավատորմը շատ եմ սիրում և պետք է դառնամ սովետական ծովային:

ԳՐԻԳՈՐ ՊԱՅԼՈԶՅԱՆ
(Երևանի № 51-րդ դպրոցի աշակերտ)

# ՄԵՆՔ ՁԳՏՈՒՄ ԵՆՔ

Հարուստ կահավորանք ունի էլեկտրոտեխնիկական կաբինետը: Այստեղ մենք էլեկտրականության հետ կապված շատ փորձեր ենք կատարում, որոնք օգնում են մեզ ֆիզիկան ավելի լավ սովորելու գործում: Մեզանից շատերն իրենք են գործիքներ պատրաստելու փորձեր կատարում, և դա մեզ հաջողվում է: Ես փորձեցի պատրաստել զումեր, որը հաստատուն հոսանքը դարձնում է փոփո-

խական, ֆոտո-ռելե, որը լույսի ճառագայթի ազդեցության տակ ինքն իրեն անջատում կամ միացնում է էլեկտրական որևէ սարք. այդ բոլորն ինձ հաջողվեց։ Ես պատրաստել եմ և փոքրիկ մոտոր, էլեկտրական զանգ, չչակ և շատ ուրիշ գործիքներ։ Իմ պատրաստած գործիքներից ամենահաջողը



Պիոներների պալատի էլեկտրոմեխանիկական կաբինետում։

բարձրախոսն է, որն ուղարկվեց Մոսկվա՝ Ֆիզիկայի գործիքների Միութենական ցուցահանդես։

Էլեկտրոմեխանիկական կաբինետն են հաճախում մոտ 45 երեխա. նրանք բոլորն էլ կարողանում են այդպիսի գործիքներ պատրաստել։ Կաբինետում մենք հաճախ զրույցներ ենք լսում մեր էլեկտրոտեխնիկայի նորությունների մասին։ Մեր խմբակը էքսկուրսիաներ է կազմակերպել դեպի Կաբելի, Ավտոգենալ, Ձերժինսկու անվան գործարանները։ Այնտեղ մենք հանդիպումներ ենք ունեցել ինժեներների և արտադրության առաջավորների հետ։ Էքսկուրսիա գնացինք նաև Պոլիտեխնիկական ինստիտուտի մեխանիկական լաբորատորիան։ Ինստիտուտի դեկան ընկեր Պետրոսյանը մեզ պատմեց կոմունիզմի մեծ կառուցումների մասին և կատարեց էլեկտրականության հետ կապված բազմաթիվ հետաքրքիր փորձեր։

Մենք այժմ սովորում ենք էլեկտրական լավ մասնագետներ դառնալու համար։

ՌՈԲԵՐՏ ԴԱՇՏՈՅԱՆ

(Երևանի Գրիբոյեդովի անվ. դպրոցի աշակերտ)




Պիոներների պալատի ցուցահանդեսում դրված է «Սուպեր» տիպի մի ռադիո-ընդունիչ։ Այնտեղ այցելողները և աշխատողները նրա միջոցով կարող են լսել երաժշտություն, վերջին լուրեր և այլ հաղորդումներ։

Երբ պալատի ռադիո-կաբինետում ես և Անդրանիկը պատրաստում էինք այդ ընդունիչը, նա ասաց.

— Ի՞նչ անենք, որ ռադիո-ընդունիչը սովորականից ավելի լավ գործի։

Երկար մտածելուց հետո ես ասացի.

— Հարկավոր է փոփոխման ենթարկել ուժեղացման և ադապտերային մասը։

Մենք այդպես էլ արեցինք։

Երբ հավաքում էինք ընդունիչի մասերը, կատարեցինք այդ կարևոր փոփոխությունները և այժմ մեր «Սուպերը» ավելի լավ է խոսում։ Նրա մասերից շատերը պատրաստել ենք մեր ձեռքով։

Երբ առաջին անգամ գործի դրինք ընդունիչը, լսեցինք հարազատ Մոսկվայի ձայնը։ 1950 թվականի նոյեմբերի վեցն էր. խոսում էր ընկեր Բուլգանինը։ Նրա զեկուցումը նվիրված էր Մեծ Հոկտեմբերի 33-րդ տարեդարձին։

Մեր ռադիո-խմբակում Արմեն Արմենյանը, Գրիգոր Սարյանը, Գևորգ Սողոմոնյանը և շատ ուրիշներ 5 լամպանի կարճալիք ռադիո-ընդունիչներ և այլ ապարատներ են պատրաստել։

Մենք սիրում ենք զբաղվել ռադիոյով, իսկ պալատը այդ գործում մեզ շատ է օգնում։

Հ. ՀԱԿՈԲՅԱՆ

(Երևանի Վորոշիլովի անվան դպրոցի աշակերտ)



Այսպես են աշխատում պալատի ռադիո-սիրողները։

# ԵՐԿՈՒ ՏԱՐՈՒՄ

— Խնդրում եմ ինձ ընդունել քանդակագործական խմբակը,— դիմելով Պիոներների պալատի դիրեկտորին, ասացի ես:

— Ուրախությամբ,— պատասխանեց դիրեկտորը,— սիրո՞ւմ ես այդ գործը:

— Շատ եմ սիրում, ես արդեն կավից կենդանիներ և զանազան առարկաներ եմ քանդակել:

Դիրեկտորն ինձ մի թերթիկ տվեց և ասաց.

— Այս թերթիկը պետք է լրացնեն ձեր դպրոցի դիրեկտորը և ավագ ջոկատավարը. իսկ դիմումը պետք է գրի քո ծնողը, որից հետո կգաս մեզ մոտ սովորելու.

Մյուս օրվանից ես սկսեցի մասնակցել խմբակի պարապմունքներին:

Սկզբում քանդակում էի մարդու մարմնի մասեր, իսկ հետո՝ երկրաչափական առարկաներ:

Անցել է մոտ երկու տարի: Ես հիմա քանդակում եմ մարդու դեմք և կատարում եմ կոմպոզիցիոն աշխատանքներ:

Քանդակել և ավարտել եմ մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի կիսանդրին, քաղաքացիական կռիվների հերոս Չապաևին՝ իր ձիու վրա նստած, հայ մեծ գրող Միքայել Նալբանդյանի կիսանդրին:

Իմ քանդակները դրված են պալատի ցուցահանդեսում:

Այժմ մեծ սիրով քանդակում եմ Սովետական Միության կրկնակի Հերոս Նելսոն Ստեփանյանի մեծադիր արձանը:

Մեր խմբակում երեսունից ավելի պիոներներ ու դպրոցականներ կան: Նրանք բոլորն էլ զբաղվում են իրենց սիրած արվեստով՝ քանդակագործությամբ: Լավ քանդակներ են արել Էդիկ Աղայանը, Վարդգես Վարդանյանը, Հովհաննես Թորոսյանը և ուրիշները:

Մեր աշխատանքները դիտել է ժողովրդական նկարիչ՝ քանդակագործ Արա Սարգսյանը և գոհ է մնացել:

Իմ նպատակն է քանդակագործ դառնալ:

ՌՈՒԲԻԿ ՇԱՀԲԱԶՅԱՆ
(Նալբանդյանի անվան դպրոցի աշակերտ)



Պատանի քանդակագործները կերտում են:

## ՄՈՆՈՒՄԵՆՏԸ

Քանաքեռ տանող
Կանաչ բարձունքին
Կանգնած է մի մեծ
Արձան բանկազին.
Այդ՝ մոնումենտն է
Մեր շատ սիրելի
Մեր հայր, ուսուցիչ
Մեծ Ստալինի:
Թե՛ գիշերն անքուն,
Թե՛ ցերեկն արթուն.
Հայացքով իր ջինջ
Վեհ ու զվարթուն
Նայում է, ժպտում
Նոր Երևանին
Մեծ Առաջնորդի
Մոնումենտն անզին:

ԱՐՄԵՆ ՀՈՎՍԵՓՅԱՆ

(26 Կոմունարների անվան դպրոցի 5-րդ դասարանի աշակերտ)



Մի պատկեր «Սպիտակ ճռեստակ» պիեսի բեմադրությունից. Նկարում՝ Պիոներների պալատի թատերական խմբակի անդամներ՝ Ցելիս Դանիելյանը՝ Թոմի դերում և Ռոզա Սիմոնյանը՝ Էնջելայի դերում: Նեգր Թոմը ոգևորված պատմում է Սովետական Միության մասին:

# ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ՀԱՆԴԻՊՈՒՄ

Լուսանկ. Վ. ՍԵՎՈՅԱՆԻ

Չինական ժողովրդական ռեսպուբլիկայի կրկեսային արտիստները Երևանում վեց օր մնացին, սակայն երևանցիները նրանց երկար կհիշեն: Այդ օրերին Երևանի կրկեսը միշտ էլ լեփ-լեցուն էր լինում:

Ամեն մի ներկայացում սկսելուց առաջ հանդիսատեսները սրտագին ողջունում էին հյուրերին: Դահլիճում լսվում էր.

— Կեցցե՛ ազատագրված չին ժողովուրդը և նրա առաջնորդ Մաո Ցզե-դունը:

— Կեցցե՛ ողջ աշխարհի աշխատավորների առաջնորդ Ստալինը:

Դահլիճը թնդում էր ծափերից:

Եղբայրական այս ջերմ, փոխադարձ ողջույններից հետո սկսվում էր ներկայացումը:

Հանդիսատեսները հիացմունքով էին դիտում հյուրերի ներկայացումները: Չինական արտիստները լավ մարզված էին, ճարպիկ, ճկուն:

Համարներից մեկը կոչվում էր «Թռչող նիզակ»...

Ահա ասպարեզ է գալիս արտիստ Բան Ցին-յանը՝ մի երկար նիզակ ձեռքին: Նիզակի ծայրին միացրած են թիթեղներ: Նա սկսում է պտտեցնել նիզակը մերթ ձեռքի ափում, մերթ բազկի, ուսի, մեջքի վրա, մերթ վզի շուրջը և մերթ էլ անց է կացնում ոտների արանքով... Նիզակի ծայրին ամրացրած թիթեղներն ախորժելի ձայներ են հանում՝ երբ այն ուժեղ է պտտվում և դադարում են, երբ դանդաղում է նրա ընթացքը: Արտիստի ճարպկությամբ հիացած հանդիսատեսներն ուրախ ծիծաղում են և ծափահարությամբ ողջունում նրան:

Դրան փոխարինում են ուրիշ, մեկը մյուսից հետաքրքիր համարներ:

Երիտասարդ վելոֆիգուրիստ Ցզեն Ե-ցինը հեծանիվը քշելիս գլխիվայր կանգնում է նրա վրա, երկու անիվների արանքում եղած եռանկյունու միջով մեկ անցնում աջ, մեկ ձախ կողմը, դեմքով դեպի ետ նստած շարունակում առաջ վարել և կամ, երկու աղջկա նույն այդ հեծանիվի վրա վերցնելով, զանազան ֆիգուրաներ կատարում: Նորից դահլիճն ուրախ ծիծաղում է, երբ Ցզեն Ե-ցինը հեծանիվն արագ քշելիս հանում է նախ նրա ղեկը, հետո առջևի անիվը և շարունակում իր ընթացքը միայն ետևի անիվի վրա:

Նույն հետաքրքրությամբ դիտվում է նաև օղակների միջով թռիչքներ կատարելը: Ահա ասպարեզ են գալիս չորս արտիստ. Մեկը դրանցից փոքրիկ, սրածայր մորուքով վաթսունամյա կոմիկ Գուն Յու-խենն է: Հատակին, իրար վրա դրվում են փայտյա օղակներ: Երիտասարդ արտիստները թռիչքներով անցնում են օղակների միջից, չկըպչելով նրանց: Ծեր Գուն Յու-խենը երիտասարդներից ետ չի մնում: Նա էլ ծիծեռնակի թեթևությամբ թռչում է օղակների միջից և կամ, ոտքերն ու ձեռքերը նեղ օղակի մեջ հագցնելով, դուրս գալիս առանց մեծ ջանքեր գործադրելու:

Պակաս հետաքրքրությամբ չի դիտվում նաև արտիստներ Զան Սյաո-լինի և Չեն Շաո-լինի ելույթները: Նրանցից մեկը գլխին պահում է ճենապակյա բրգաձև վազա և գլխիվայր շարժումներ անում:

Այդպես, մեկը մյուսին հաջորդելով, ելույթ են ունենում տասնյակ արտիստներ, արժանանում հանդիսատեսների ջերմ սիրուն:

## ՊԱՏԱՆԻ ԱՐՏԻՍՏՆԵՐԸ

Խմբում կան նաև պատանի արտիստներ: Նրանցից շատերն իրենց հարազատների՝ քույրերի կամ եղբայրների հետ են եկել: Բանն այն է, որ Չինաստանում մինչև ժողովրդական ռեսպուբլիկա ստեղծելը պետական կրկես չկար, չնայած դարերից ի վեր հայտնի է նրա կրկեսային բարձր արվեստը: Դրանով զբաղվում էին առանձին անհատներ կամ ընտանիքներ: Նրանք էլ իրենց արվեստը հաղորդում էին սերնդից սերունդ: Այդ բանը նկատելի է և այս խմբում: Պատանի արտիստուհի Չեն Բայ-յուն Սովետական Միություն է եկել իր երեք եղբայրների՝ ժոնգլյոր Չեն Լա-բընի, ակրոբատներ Չեն Լի-բընի և Չեն Սըն-բընի հետ: Բայց միայն եղբայրները չէ, որ զբաղվում են կրկեսային արվեստով: Նրա հայրը՝ Չեն Հուըն-շընը, մայրը՝ Չեն Յուե-ին և քույրերը նույնպես կրկեսի արտիստներ են: Ինքը՝ Չեն Բայ-յուն կրկեսային արվեստով սկսել է զբաղվել մանուկ հասակից: Հայրը նրան սովորեցնում էր չինական մենամարտ,

向阿尔美尼的少年
先锋队致敬！

中華雜技團

Չինական արտիստների թողած ողջույնի խոսքը՝
«Ողջույն Հայաստանի պիոներներին»

մարմնամարզություն, օդում թռչել, ջրային մետեորների խաղը և այլ բաներ: Ինը տարեկանից նա ելույթներ է ունեցել կրկեսում և իրենց ընտանիքի հետ գաստրոլների է գնացել Չինաստանի շատ քաղաքներ և արտասահման: Բայց որովհետև փոքր է եղել, հիշում է միայն Պեկին, Տյանցզին, Հանկոու քաղաքները:

սերամարտով: Երբ նա դարձավ վեց տարեկան, խնդրեց քեռիներին իրեն էլ սովորեցնել խաղալ: Քեռիները չմերժեցին: Շուտով պարզվեց, որ Ջու Յու-չընը շատ ընդունակ երեխա է: Քեռիներն սկսեցին նրան իրենց հետ կրկես տանել: Այդպես էլ նա յոթ տարեկան հասակից դարձավ կրկեսի արտիստ: (Այժմ նա արդեն 12 տարեկան է):



Չինական կրկեսի պատանի արտիստների մի խումբ:
Ձախից աջ՝ Չեն Բայ-յու, Ջու Յու-չըն, Փան Լեն-ի, Վան Շու-իըն.

Ահա այսպես առանձին ընտանիքներ զբաղվում էին կրկեսային արվեստով, իսկ պետական կրկես չկար:

Չինաստանում ժողովրդական ռեսպուբլիկա հաստատվելուց հետո երկրում անցկացվեցին կրկեսային մրցություններ: Հայտնի էր, որ լավ արտիստները պետք է գան Սովետական Միություն:

Փոքրիկ Ջու Յու-չընն այդ ժամանակ ապրում էր Տյանցզին քաղաքում. Նրա հայրը՝ Ջու Գո-լյանը կրկեսային արտիստ է, ուժեղ: Քեռիները՝ Ջու Գո-սյունը և Ջու Գո-ցյուանը նույնպես կրկեսի արտիստներ են՝ չինական մենամարտի, գիմնաստիկայի և սուսերամարտի մասնագետներ: Փոքր հասակից դեռ Յու-չընը սիրում էր դիտել, թե ինչպես քեռիները մենամարտում են, զբաղվում սու-

Ցերեկը նա սովորում էր դպրոցում, իսկ երեկոները ելույթ ունենում:

Եվ ահա փոքրիկ Ջու Յու-չընը իմացավ, որ կրկեսային արտիստների մի խումբ է կազմվում, որը պետք է մեկնի Սովետական Միություն՝ գաստրոլների: Խմբի մեջ ընդունվելու համար հարկավոր էր քննություն տալ:

Փոքրիկ Ջու Յու-չընը շատ էր ցանկանում Սովետական Միություն գալ:

Քեռիների և հոր հետ նա էլ գնաց քննության, սակայն նրանց ընտանիքից Սովետական Միություն ճանապարհվող խմբի մեջ ընդունվեց միայն ինքը: Նրան հարցրին.

— Առանց մայրիկի չե՞ս վախենա այդքան հեռու տեղ գնալ:

Ոչ, Ջու Յու-չընը չէր վախենում: Նա երա-



Բուրգ նենապակե ամաններ գլխին. կատարում են՝ Զան Սիս-լին և Զեն Շաո-լին:

գում էր տեսնել Մոսկվան: Նա գիտեր, որ սովետական ժողովուրդը չինական ժողովրդի ամենալավ բարեկամն է: Գալով Սովետական Միություն, Ջու Յու-չրնը իր ընկերների հետ եղել է Մոսկվայում, Լենինգրադում, Կիևում, Բաքվում և ապա եկել է մեզ մոտ՝ Երևան։

Ամեն տեղ նա շուտ բարեկամանում է սովետական երեխաների հետ, չնայած նրանց լեզուն չի հասկանում: Իր նոր բարեկամների հետ նա ազատ ժամերին սահնակ է քշում, նկարազարդ գրքեր թերթում և միաժամանակ ջանասիրությամբ սովորում է ռուսերեն։

— Երբ մեծանամ,—ասում է նա,—նորից կգամ Սովետական Միություն և այն ժամանակ ռուսերեն կխոսեմ:

Սովետական այն քաղաքները, ուր եղել է նրանց խումբը, Ջու Յու-չրնին և իր ընկերներին շատ են դուր եկել: Դուր է եկել նաև մեր Երևանը:

Այդ բոլորի մասին մեզ պատմեց չինական արտիստների խմբի ղեկավար Դին-Լին:

— Մենք—ասաց նա,—հիացած ենք այն ընդունելությամբ, որ ցույց տվին մեզ Սովետական Միությունում: Սովետական ժողովուրդը չին ժողովրդի հզոր և ամենալավ բարեկամն է: Երևան քաղաքում մեզ ցույց տված ընդունելությունը ևս այդ է ապացուցում: Այստեղ մեզ այնքան ջերմ ու սրտառուչ ընդունեցին, որ թվաց, թե մենք ոտք ենք դրել մեր հայրենի քաղաքը: Յուրաքանչյուր քայլափոխում մենք զգում էինք բնակչության անհուն սերը մեր նկատմամբ: Դա մեր սիրտը լցնում է հպարտության զգացմունքով այն բանի համար, որ մենք պատկանում ենք մի ժողովրդի, որի առաջնորդն է Մաո Ցզե-դունը։ Դա մեր մեջ ավելի է ջերմացնում սերը մեծ առաջնորդ, հանճարեղ Ստալինի նկատմամբ: Նրա իմաստուն քաղաքականության շնորհիվ է կոփվել, ամրացել սովետական և չին ժողովուրդների բարեկամությունը, նրա շնորհիվ է, որ մեր ժողովուրդը կարողացավ հաղթել իր ոխերիմ թշնամիներին՝ դավաճան Չան-Կայ-շիին, ճապոնացիներին, անգլո-ամերիկյան ինտերվենտներին և ձեռք բերեց ազատություն:

Հայաստանը մենք շատ սիրեցինք նաև նրա համար, որ նրա ժողովրդի վիճակն անցյալում շատ նման է եղել մեր ժողովրդի վիճակին: Անցյալում, ինչպես մենք տեսանք «Հայրենի երկիր» կինոնկարում, անգլո-ամերիկյան իմպերիալիստների դավաճանական քաղաքականության հետևանքով հայ ժողովուրդը հասել էր ծայրահեղ աղքատության դուռը: Բայց հիմա տեսնում ենք, որ նա վերածնվել է և իր համար ստեղծել շքեղ ու երջանիկ կյանք: Մեզ հիացնում են ձեր նորակառույցները: Երևանում որ կողմն էլ նայես՝ նոր շենքեր են կառուցվում: Հներից մի քիչ դեռ մնում է, բայց զգում ես, որ շուտով դա ևս չի լինի:

Մենք հիացած ենք հայ ժողովրդի կուլտուրական նվաճումներով: Մեզ վրա անջնջելի տպավորություն է թողել Ստալինի մոնումենտը, ձեր օպերան, ուր տեսել ենք «Դավիթ-բեկ» ներկայացումը, Հայաստանի նկարիչների ցուցահանդեսը, երգի և պարի անսամբլի համերգը: Այդ անջնջելի տպավորություններով էլ մենք կվերադառնանք հայրենիք:

Վերջում ձեր ամսագրի միջոցով ցանկանում եմ ողջունել Հայաստանի պիոներներին:

Գ. ՍԵՎՈՒՆՑ

## ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ ԵՎ ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ

# ՄԵՐ ՋՈԿԱՏՈՒՄ

*Ձեզանից շատերը երբեք չեն եղել մեր դպրոցում և գուցե ծանոթ չեն մեր պիոներական ջոկատի աշխատանքներին։ Ես ուզում եմ պատմել, թե ինչպես ենք մենք աշխատում։*

*Դուք բոլորդ հիշում եք դեկտեմբերի 24-ի օրը, երբ Սովետական Միության մի շարք ռեսպուբլիկաներում և մարզերում մեր ժողովուրդը տեղական սովետներ ընտրեց։ Մեր պիոներական ջոկատն այդ օրը մեծ աշխատանք տարավ։*

*Մոլոտովյան ռայոնի ներրորդ տեղամասը գտնըվում էր մեր դպրոցի շենքում։*

*Գեղեցիկ ու տոնական տեսք էր ընդունել տեղամասը։ Պիոներները պատերին փակցրել էին առաջնորդների նկարները և բազմաթիվ լոզունգներ։ Ջոկատի մի քանի պիոներներ մուտքի մոտ, միջանցքներում և ընտրական ցուցակների առաջ օրինակելի հերթապահություն էին կատարում։ Նրանցից ամեն մեկը ճիշտ ժամին լինում էր հանձնարարված պոստում։ Ջոկատի գեղարվեստական խմբակն ընտրողների համար կազմակերպում էր ցերեկույթներ։ Լենա Մաղոյանն այդ օրը արտասանեց Հովհաննես Շիրազի «Մեծ Ստալինին» բանաստեղծությունը, Ռոզա Մելքոնյանը պարեց «Շուշիկի», իսկ մյուսները երգեցին խմբական երգեր։*

*Ընտրության օրը պարզվեց, որ ընտրողներից մի քանիսը հիվանդ են։ Մեր ջոկատի պիոներներն օգնեցին ընտրական տեղամասին։ Նրանք հանձնաժողովի անդամների հետ միասին փոքրիկ քվեատուփերը տանում էին ընտրողների տները։ Այսպես էինք մենք օգնում ընտրություններին։ Հաջորդ օրը տեղամասի հանձնաժողովի նախագահը շնորհակալություն հայտնեց մեր ջոկատավարին, ջոկատի լավ աշխատանքի համար։*

*1951 թվականի փետրվարի 25-ը Գերագույն Սովետի ընտրությունների օրն է։ Ամբողջ երկիրը պատրաստվում է համաժողովրդական այդ տոնին։ Մեր ջոկատն էլ իր անելիքներն ունի։*

*Փետրվարի 25-ը բարձր ցուցանիշներով դիմավորելու համար, մենք օգնում ենք միմյանց։ Ֆլորա Մելքոնյանը և Քնարիկ Դավթյանը ռուսաց լեզվից ետ էին մնում։ Առաջավոր աշակերտուհի Դրեստա Թադևոսյանը պարապեց նրանց հետ և Ֆլորան հիմա այդ առարկայից «4» է ստանում։ Նորա Ահարոնյանի օղակի պիոներները խոստացել են ընտրությունների օրը դիմավորել առանց «2» գնահատականի։ Մենք այդ օրը կօգնենք տեղամասի հանձնաժողովին։ Պիոներները նոր ելույթներ են պատրաստում։ Նեստա Դանիելյանի ղեկավարությամբ նրանք ընտրողներին ցույց կտան «Չարի վերջը» պիեսը։ Հիմա Էմմա Մարգարյանն օգնում է Գետառաչայի փողոցի № 37 շենքի ագիտատորին։ Նա ամեն շաբաթ օր գնում է ունկնդիրների տները և նրանց հրավիրում ագիտացիայի վայրը։ Նորա Մաթևոսյանը ջոկատում կազմակերպում է հետաքրքիր զրույցներ Կոնստիտուցիայի և ընտրական օրենքի շուրջը։ Նորան պիոներների հետ միասին արդեն ծրագրում է, թե ինչպես պետք է օգնեն ընտրական հանձնաժողովին։*

*Մեր ջոկատում տիրում է աշխույժ եռուզեռ։ Ամեն մի պիոներ ձգտում է կատարել իր խոստումը։*

*ՄԱՌԼԵՆԱ ՀՈՎՍԵՓՅԱՆ*
(Երևանի № 3 դպրոցի 7-րդ ջոկատի ջոկատավար)

### Լենինյան օրերին

*Թելմանի անվան դպրոցի պիոներական դրուժինան արժանավայել կերպով նշեց մեծ Լենինի մահվան 27-րդ տարեդարձը։ Բոլոր ջոկատներում տեղի ունեցան հավաքույթներ, որտեղ պիոներները լսեցին զրույցներ Լենինի մանկության ու պատանեկության տարիների մասին։ Ջոկատները և դրուժինան հրատարակեցին պատի թերթեր, ֆոտո թերթեր։ Լենինյան օրերին նվիրված դրուժինայի հավաքում 3-րդ Դ և 3-րդ Ե դասարանների աշակերտները ընդունվեցին պիոներական կազմակերպության շարքերը։ Հանդիսավոր նիստից հետո, դպրոցի թատերական խմբակը պիոներների համար բեմադրեց «Գնդի որդին» պիեսը։*

### Արժանի դիմավորում

*Փառապանծ Սովետական Բանակի 33-րդ տարեդարձը դրուժինան դիմավորում է նոր հաջողություններով։ Այդ օրը պիոներական կազմակերպության շարքերը կընդունվեն 3-րդ Ա և 3-րդ Բ դասարանի աշակերտները։*

### Ձմեռային արձակուրդներին

*Հետաքրքիր անցավ № 32-րդ ջոկատի պիոներների և դպրոցականների ձմեռային արձակուրդը։*

*Ջոկատները էքսկուրսիա կազմակերպեցին դեպի Ստալինի վեհաշուք մոնումենտը, եղան Պիոներների պալատի պատանի ստեղծագործողների ցուցահանդեսում և դիտեցին «Քեռի Թոմասի տնակը» պիեսը։*

*Այդ օրերին ուսման գերազանցիկ Արամ Վարդանյանը օգնեց իր դասընկեր Լյովա Թորոսյանին, որը հայոց և ռուսաց գրավորից երկուս ուներ։ Այժմ Լյովան գրում է գեղեցիկ և առանց սխալների։*

### Այսպես են օժանդակում

*№ 32-րդ դպրոցի շենքում տեղավորված են № 3 ֆաբրիկային ընտրական օկրուգը և 7-րդ տեղամասը։*

*Դրուժինան եռանդուն կերպով պատրաստվում է Գերագույն Սովետի ընտրություններին։ Պիոներները զարդարել են դպրոցի դահլիճը և սրահները, լույս են ընծայել պատի թերթեր։*

*Այստեղ քվեարկվելու է Հայաստանի Կոմունիստական Պարտիայի ղեկավար Գրիգոր Արտեմի Հարությունյանը։*

*Ամբողջ դրուժինան պատրաստվում է փետրվարի 25-ին ընտրական հանձնաժողովներին և ընտրողներին իր օգնությունը ցույց տալ։*

# ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆ

*ԱԼԵՔՍԱՆԴՐ ՉԱԿ*

*Նկ. Լ. ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ*

Քայլում ես ահա դպրոցի ճամփով
Խնդությամբ, ուրախ երգը շուրթերիդ,
Շնչում ես մաքուր օդը հոգեբով
Եվ թարմ բուրմունքը բյուր ծաղիկների.
Տրամվայներն են արագ սլանում,
Աղմկում ուժգին խաչմերուկներում
Եվ ավտոները թռչում են, թռչում,
Երեխաները այգում ծիծաղում...
Բոլորի համար ասա խնդագին՝
— Շնորհակալությո՜ւն, Կարմիր Բանակին։
Առանց երկյուղի կարող ես կանգնել
Կանաչ բալենու ստվերի ներքո,
Անծայր արտերից ծաղիկներ քաղել,
Նայել արևին, սեգ լեռներին քո,
Տեսնել դաշտերում ավտո, սերմնացան
Եվ հողը բերրի, հասկերը պայծառ,
Կարող ես տեսնել խինդը բանվորի
Պատուհաններից գործարանների...
Բոլորի համար ասա խնդագին՝
— Շնորհակալությո՜ւն, Կարմիր Բանակին։
Նա է մեզ տվել մեր գալիք կյանքի
Արշալույսն անշեղ ու ազատություն,
Բանակն այս հզոր հսկում է կրկին
Քո խաղերն ուրախ, առօրյադ խնդուն,
Ոչ ոք չի կարող քո իղձերը վառ
Ու երազներդ դարձնել խավար,
Այնպես սովորիր, զավակ իմ անգին,
Որ արժան լինես դու նրա գործին,
Բոլորի համար ասեք միասին՝
— Շնորհակալությո՜ւն, Կարմիր Բանակին։

*Փոխադրեց՝* ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ



# Ռուս մեծ գիտնականը ՊԱՎԼՈՎԸ

(Մահվան 15-րդ տարելիցի առթիվ)

Լ. ՄԱՏԻՆՅԱՆ
(Ֆիզիոլոգիայի ինստիտուտի գիտաշխատող)

Նկ. Գ. ԱՐԱՄՅԱՆԻ

Ամբողջ աշխարհում ճանաչված գիտնական Իվան Պետրովիչ Պավլովը հանդիսանում է ռուս մեծ ժողովրդի լավագույն զավակներից մեկը, նրա պարծանքը։

Իսկ ի՞նչ է տվել Իվան Պետրովիչը մարդկությանը։

Պավլովն ուսումնասիրել է մարդու և կենդանիների օրգանիզմները և գտել նրանց գործունեության ու զարգացման օրենքները։ Առաջին անգամ ամբողջ աշխարհում Պավլովն է կարողացել բացատրել, թե ինչպե՞ս է տեղի ունենում մարսողությունը ստամոքսում, ինչպե՞ս է աշխատում սիրտը, ինչպե՞ս է աշխատում ամենաբարդ օրգանը՝ ուղեղը։ Նա ցույց է տվել, որ օրգանիզմում տեղի ունեցող բոլոր գործողությունները ղեկավարում է ուղեղը՝ ներվային համակարգության միջոցով։



Ինչպե՞ս է Իվան Պետրովիչը կարողացել բացատրել այդ բարդ երևույթները։

Ինչպես հայտնի է ուտելիքը բերանից ստամոքս է գնում կերակրափողի միջոցով։ Պավլովը կտրում է շան կերակրափողը, դուրս բերում ծնոտի տակից և ապա կերակրում շանը։ Ուտելիքն, ինարկե, ստամոքս չի գնում, այլ դուրս է թափվում, բայց ստամոքսում սկսվում է հյութի արտադրությունը, որը ծորում է ստամոքսից դուրս բերված խողովակով։ Ներվային համակարգության դերն այս գործողության մեջ ցույց տալու համար, նույն փորձը երկրորդ անգամ կատարում է այն՛ շան վրա, որի ստամոքսին մոտեցող ներվը նախապես կտրված է։ Շունն ուտում է կերակուրը, որը կերակրափողից դուրս է թափվում։ Այս դեպքում ստամոքսում հյութ չի արտադրվում։ Սա ցույց է տալիս, որ ներվային համակարգությունն է կարգավորում ստամոքսի մարսողության գործողությունը։

Այս և ուրիշ շատ գյուտերի համար Պավլովը համաշխարհային հռչակ է ձեռք բերում և 1904 թվին արժանանում Նոբելյան մրցանակի։ Պատմում են, որ մրցանակ շնորհող Շվեդիայի թագավորը հատկապես սովորել էր ռուսերեն մի քանի նախադասություն՝ նրան շնորհավորելու համար։ Ողջույնի խոսքով հանդես եկող պրոֆեսորը ռուսերեն էր սովորել, որպեսզի Պավլովին շնորհավորեր նրա լեզվով։

*Մարսողության գործողությունն ուսումնասիրելիս, Իվան Պետրովիչը նկատում է, որ թուքը արտադրվում է ոչ միայն այն ժամանակ, երբ ուտելիքն ընկնում է բերանը, այլև տեսնելիս, կամ հոտն զգալիս, այն էլ միայն ծանոթ ուտելիքի դեպքում։ Սա ցույց է տալիս, որ գրգռվում են տեսողության կամ հոտառության զգայարանները, որոնք իրենց հերթին գրգռում են թքի գեղձերի աշխատանքը ղեկավարող կենտրոններն ուղեղում։*

*Ինչպե՞ս ապացուցվեց այդ։*

*Պավլովը նույն փորձերը կատարեց առողջ, ապա նաև ուղեղի մեծ կիսագնդերը հեռացրած շան վրա։ Փորձերը ցույց տվին, որ ուղեղի մեծ կիսագնդեր չունեցող շունը կերակրի հոտն զգալիս կամ այն տեսնելիս ուտելու ցանկություն չի ցուցաբերում։ Այս փորձով Իվան Պետրովիչը եկավ այն եզրակացության, որ այլ օրգանների աշխատանքը դիտելով կարելի է պատկերացում կազմել ուղեղի աշխատանքի մասին։*

*Սա մեծ հայտնագործություն էր, որից մինչև այժմ էլ օգտվում են բնագետները և բժիշկները։*

*Նկատի ունենալով, որ ուղեղն է ղեկավարում մյուս օրգանների աշխատանքը և նրա վիճակով է որոշվում մյուս օրգանների վիճակը, մի շարք հոգեկան հիվանդություններ բուժում են քնի միջոցով։ Այսպիսով բժիշկներն առողջացնում են ուղեղը և ներվերը, որի հետևանքով բարելավվում է մարմնի առողջությունը։ Քնի միջոցով այժմ բուժում են նաև ստամոքսի խոցը։*

*Իվան Պետրովիչ Պավլովի մեծ հայտնագործությունները մարդկությունը բարձր գնահատեց։ 1935 թ. Լենինգրադում տեղի ունեցած ֆիզիոլոգների միջազգային կոնգրեսում 56 երկրների գիտնականները նրան ճանաչեցին որպես աշխարհի ամենամեծ ֆիզիոլոգը։ 1949 թ. սեպտեմբերին, ամբողջ Սովետական Միությունը տոնեց Պավլովի հարյուրամյա հոբելյանը։*

*Պավլովի աշխատանքը բարձր են գնահատել մեր մեծ առաջնորդները՝ Լենինը և Ստալինը։*

*Պավլովը շատ աշխատասեր էր։ Նա փոքր հասակից սկսած՝ ոչ միայն տարվում էր գրքերով, այլև սիրում էր աշխատել բանջարանոցում, ծաղկանոցում։ Սիրում էր երգն ու երաժշտությունը, բնության և մարդկության պատմության մասին նկարներ էր հավաքում։ Զբաղվում էր ֆիզկուլտուրայով. Նա լավ մարմնամարզիկ էր նաև մեծ հասակում։ Պավլովն ամբողջ կյանքում, առավոտները սառը ջրի վաննաներ էր ընդունում։ Խմիչքներ չէր գործածում, չէր ծխում։ Այսպիսով նա պահպանում էր իր առողջությունը և նվիրվում գիտությանը։ Ժամանակակիցները պատմում են, որ նա երբեք չէր հիվանդանում։*

*Պավլովն օրինակելի էր նաև իր անձնական կյանքում։ Նա շատ խիստ էր վարվում ստախոսների հետ։ Եթե նա համոզվում էր, որ ինքը որևէ բանում սխալվում է, արիաբար հանձն էր առնում իր սխալը և ուղղում։ Նա պահանջկոտ էր ինչպես ուրիշների, այնպես էլ իր նկատմամբ։ Նա շատ ճշտապահ էր։ Նրա աշակերտներն ասում էին, թե Իվան Պետրովիչի գալու ժամանակ կարելի է ժամացույցներն ուղղել։*

*Պավլովը մեծ հայրենասեր էր։ Երբ նա մեկնում էր արտասահման, շտապում էր շուտ վերադառնալ հայրենիք։ Պատմում են, որ նա մի անգամ արտասահմանից վերադառնալիս սահմանի մոտ իջել է գնացքից և գլուխ խոնարհել հայրենի հողի առջև։*

*Դժվար է եղել մեծ գիտնականի կյանքն ու գործունեությունը։ Նա անընդհատ հալածվել է ցարական կառավարության կողմից, շատ օրեր անցկացրել քաղցի ու կարիքի մեջ։ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլուցիան էր, որ նրան ապրելու և ստեղծագործելու լայն հնարավորություններ տվեց։*

*Իվան Պետրովիչ Պավլովը ապրեց ու ստեղծագործեց մինչև 87 տարեկան հասակը։ Նա վախճանվեց 1936 թ. փետրվարի 27-ին։*

*Իվան Պետրովիչ Պավլովը մի կտակ է թողել երիտասարդությանը։ Այդ կտակի մեջ նա խորհուրդ է տալիս սովորել, լինել պահանջկոտ իրենց նկատմամբ, լինել համեստ և աշխատասեր, աշխատանքում գուսպ և համբերատար։*

# Վ Ե Ր Ա Դ Ա Ր Ձ

Ս Ա Ր Մ Ե Ն

Մենք սարերից քաղաք հասանք
Ուրախ երգի զնգոցով,
Գլուխներիս ծաղկեպսակ՝
Անց ենք կենում փողոցով:

Հայրենական հողն է թնդում
Մեր համաչափ քայլերից,
Կարծես հաղթել ենք մեծ մարտում,
Տուն ենք դառնում մենք նորից:

Ծածանվում է դրոշը մեր,
Բա՛րձր, բա՛րձր ու հպարտ,
Ամեն կողմից ծանոթ ձայներ
Մեզ ողջունում են զվարթ:

Ձիլ հնչում է խաղաղության,
Երջանկության երգը մեր,
Զայնակցում են մեր խնդության
Դաշտեր, ձորեր ու լեռներ:

Մենք քայլում ենք չոկատ-չոկատ,
Որպես մի գունդ մարտական,
Մեր դեմ ինչպես լուսե գագաթ,
Ժպտում է վառ ապագան:

# ՀԱՐՅՈՒՐ ԵՐԵՍՈՒՆ ՏԱՐԻ ԱՌԱՋ

ԱՐ. ՕՀԱՆՅԱՆ

Նկ. Հ. ՂԱԶԱՐՅԱՆԻ

1819 թվականի հուլիսի 4-ին Պետերբուրգի (այժմ Լենինգրադ) մոտ գտնվող Կրոնշտադտ ամրոցի նավահանգստում մեծ բազմություն էր հավաքվել: Այդ օրը «Վոստոկ» և «Միրնի» առագաստանավերը Ֆադեյ Բելլինսհաուզենի և Միխայիլ Լազարևի հրամանատարությամբ, ճանապարհվում էին դեպի Հարավային բևեռ:



Նավերին առաջարկված էր հնարավորին չափ հեռու գնալ և վերջնականապես պարզել՝ Հարավային ցամաք կա, թե՞ ոչ. իսկ Հարավային ցամաքի որոնումն աշխարհագրագետների ամենագրավիչ խնդիրներից մեկն էր:

Հնչեցին փողային նվագախմբի խրոխտ ձայները, Ֆիննական ծոցի ջրերի վրա որոտացին թնդանոթները և նավերը ճանապարհ ընկան:

Քանի նավերը մոտենում էին հասարակածին, այնքան ավելի գրավիչ էր դառնում Ատլանտյան օվկիանոսը: Նավերին ուղեկցում էին դելֆինները և շնաձկները: Ծովային արծիվները սավառնում էին նավերի վերևում, թռչող ձկները թռչում

անցնում էին նավերի վրայով, իսկ երբ օվկիանոսի վրա իջնում էր արևադարձային գիշերը, երկնքում անթիվ աստղեր էին շողշողում։ Օվկիանոսի ջրերը լուսավորվում էին անհամար լուսատու կենդանիների լույսով և նավերն ասես ոսկեզօծվում էին։

Նոյեմբերին նավերը հասան Բրազիլիայի Ռիո Դե Ժանեյրո նավահանգիստը։ Հայրենիքից հեռացած նավաստիները սկսեցին կարոտել հայրենիքին։ Նրանցից մեկը օրագրում գրեց՝ «Այստեղ նոյեմբերին ամեն ինչ ծաղկում է և բուրմունքով լցվում, իսկ Պետերբուրգում աշնանային խոնավություն է, անձրև, փչում է ցուրտ քամին. բայց հարազատ, աշնանային Պետերբուրգն ավելի սիրելի է, քան արևադարձային Ռիո Դե Ժանեյրոն»։

Այդտեղից սկսած նավերի ճանապարհը դժվարանում էր։ Կլիման զգալիորեն փոխվեց։ Երկինքը ծածկվեց թանձր ու սև ամպերով։ Սկսեցին երևալ ահագին լողացող սառցասարեր, որոնց մի փոքր հարվածից անգամ առագաստանավերը ջարդուփշուր կլինեին։ Հսկայական կետերն այստեղ ու այնտեղ բարձր շատրվաններ էին ժայթքեցնում, իսկ պինգվինները ջրից դուրս գալով զարմացած նայում էին նավերին։ Շատ վաղուց էր, որ այստեղի թռչուններն ու գազանները նավեր չէին տեսել։



1774 թվին անգլիացի ծովագնաց Ջեմս Կուկը եղել էր Հարավային բևեռի շրջանի ջրերում։ Նա նպատակ էր ունեցել գտնել Հարավային ցամաքը և անգլիական դրոշ բարձրացնել այդտեղ։ Բայց դեմ առնելով սառցե համատարած պատնեշների, Կուկը հիասթափվել էր ու հրաժարվել իր նպատակից։ Նա գրել էր. «...Ոչ մի մարդ երբեք չի համարձակվի գնալ ավելի հարավ, քան այդ հաջողվեց ինձ...»։

Ջեմս Կուկը սխալվում էր։ Ռուսական ծովագնացներ՝ Բելլինսհաուզենը և Լազարևը հաղթահարեցին սարսափելի սառնամանիքը, ձյունախառն բուքն ու ահռելի սառցասարերը և գնացին ավելի հարավ, քան Կուկը։

Հարավային բևեռային շրջանը կարծես թե որոշել էր իր գաղտնիքները չբացել մարդկանց առաջ։ Բնությունը կատաղել էր։ Ալիքների փրփուրը թափվում էր նավերի վրա, անհողամուղ քամին պոկում, տանում էր նավի սառցակալած առագաստները, ջարդում կայմերը։ Նավերը ճռճվում էին տաշեղների նման և լցվում օվկիանոսի սառը ջրով։ Թանձր մառախուղի և մթության մեջ ուրվականների պես անցնում էին սառցասարերը։ Միմյանց չկորցնելու համար նավերը կրակում էին թնդանոթներից ու բենգալյան կրակով լուսա-

վորում իրենց շրջապատը։ Մի բուռ մարդկանց և անեղ բնության այս կռիվը ահեղագոչ աղմուկի մեջ, մի սարսափելի տեսարան էր ներկայացնում։ Բայց ռուս ծովագնացների աննկուն կամքն ամեն անգամ հաղթահարում էր կատաղի տարերքը։

Այսպես մեկ ու կես տարի «Վոստոկը» և «Միրնին» կատաղի պայքար մղելով, որոնումներ էին կատարում։

1821 թվականի հունվարի 10-ին «Վոստոկ» նավի հերթապահ նավաստիները հայտնեցին, որ ինչ-որ գորշ գծեր են տեսնում։ Բոլորը դուրս վազեցին տախտակամած ու սկսեցին դիտել։

— Ա՛փ, ա՛փ,—հանկարծ բացագանչեցին նրանք։

Անզուսպ ուրախությունը համակեց բոլորին։

Նավերից ոչ շատ հեռու երևում էր մի բարձր, ամբողջովին ձյունով ծածկված կղզի, որին տրվեց «Պետրոս առաջինի կղզի» անունը։

1821 թ. հունվարի 29-ին ծովագնացները հայտնագործեցին մի ավելի լայնատարած ցամաք, որին «Ալեքսանդր առաջինի երկիր» կոչեցին։ Այս վերջինը Անտարկտիդա կոչված Հարավային ցամաքի մի մասն էր, նրա հյուսիսային թերակղզիներից մեկը։

Այսպիսով, սրանից 130 տարի առաջ, հունվարին, ռուս խիզախ ծովագնացները, Ֆ. Բելլինսհաուզենի գլխավորությամբ, հայտնագործեցին վեցերորդ աշխարհամասը՝ Անտարկտիդան։

Ֆ. Բելլինսհաուզենի ու Մ. Լազարևի հերոսական ճանապարհորդությունը տևեց 751 օր։ Այս ժամանակ-



վա ընթացքում ծովագնացներն անցան 92.256 կիլոմետր տարածություն ու «Պետրոս առաջինի կղզուց» և «Ալեքսանդր առաջինի երկրից» բացի 27 կղզի էլ հայտնագործեցին։

Վեցերորդ աշխարհամասի՝ Անտարկտիդայի հայտնագործման պատիվը անվիճելիորեն պատկանում է ռուս ծովագնացներին։

Չնայած դրան, վերջերս անգլիական և ամերիկյան իմպերիալիստները ձգտում են գավթել Անտարկտիդան։ Այդ բանը կանխելու համար Սովետական կառավարությունը ամբողջ աշխարհին հայտարարել է, որ առանց ՍՍՌՄ-ի մասնակցության Անտարկտիդայի մասին ընդունված որևէ որոշում չի կարող ճանաչվել օրինական։

# ԳԻԳԱՆՏ ԳՈՐԾԱՐԱՆԸ

Նկ. Տ. ՍՅՈՒԴՋՅԱՆԻ



Սովետական իշխանության առաջին տարիներին Լենինը երազում էր մեր երկրում 100 հազար տրակտոր ունենալու մասին: Հիմա մեր դաշտերում աշխատում են շատ ու շատ անգամ ավելի տրակտորներ, կոմբայններ և ուրիշ գյուղատնտեսական մեքենաներ, քան երազել է մեծ Լենինը:



Գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ արտադրող մեծ գործարաններ շատ կան մեր հայրենիքում: Դրանցից մեկն էլ Ռոստսելմաշն է: Ռոստսելմաշ նշանակում է՝ Ռոստովի Գյուղատնտեսական մեքենաշինական գործարան: Այս հսկան կառուցվեց Ստալինյան առաջին հնգամյակի տարիներին: Կառուցման վայրը ընտրվեց Ռոստովը, որովհետև նրան մոտիկ են Տագանրոգն ու Սուլինը, որոնք Ռոստսելմաշին տալիս են զանազան տեսակի մետաղներ, Շախտը, որը տալիս է ածուխ և էլեկտրաէներգիա, Մայկոպը, որն ատաղձի փայտ է տալիս:

Այնքան շատ ու բազմատեսակ մեքենաներ ու գործիքներ է արտադրում Ռոստսելմաշը, որ եթե մեկ առ մեկ թվես ու նկարագրես, մի քանի հատոր գիրք կկազմի: Ռոստսելմաշն ավելի շատ մեքենաներ ու գործիքներ է արտադրում, քան մի որևէ այլ երկրի բոլոր գործարանները:

Նշանավոր են Ռոստսելմաշի արտադրած Ստալինեց—6 և Ստալինեց—8 կոմբայնները, որոնք տարածված են բոլոր ռեսպուբլիկաներում:

Հայաստանում այս կոմբայններն սկսեցին գործադրվել 1949 թվից: Ստալինեց կոմբայնները բերքահավաքի մեքենաներ են: Նրանք շարժվում են տրակտորների օգնությամբ և արտը հնձելուց բացի, ծեծում են, անջատում մղեղից, հարդից և պատրաստի ցորենն ուղարկում կոլխոզ: Ստալինեց—6 կոմբայնը մեկ օրում մոտ 300 մարդու գործ է կատա-

րում: Ստալինեց—8 կոմբայնը 400 մարդու է փոխարինում:

Մեր երկրում արտադրվում է նաև Ստալինեց—4 կոմբայնը: Սա առաջին երկուսից տարբերվում է նրանով, որ ինքնագնաց է և տրակտորի օգնության կարիք չունի:

1950 թվի բերքահավաքի ժամանակ անվանի կոմբայնավար Շարոյան Աղվանը առաջին անգամ Հայաստանում, այս կոմբայնով հավաքեց մոտ 400 հեկտար ցորեն. այսինքն՝ մենակ կատարեց 8400 մարդու աշխատանք:

Այս կոմբայնները ուրիշ առավելություններ էլ ունեն. մեծ չափով կրճատում են բերքահավաքի ժամանակը և դրա համար էլ բերքի կորուստ չեն տալիս:

Կոմբայնի մի տեսակն էլ կա, որ կոչվում է «Կալսիչ կոմուճա»: Սա չի հնձում, այլ հավաքված հասկը միայն ծեծում և զտում է մղեղից ու հարդից:

Կալսիչ կոմուճան օգտագործում են փոքր հողամասերում, սարալանջերին ընկած արտերում, որտեղ Ստալինեց կոմբայնները չեն կարող աշխատել. այդ տեղերի արտերը հնձում են մանգաղով կամ գերանդիով և ծեծում ու զտում են կալսիչ կոմուճայով:

Ռուստսելմաշ գործարանն արտադրում է նաև վուշ, կարտոֆիլ, ճակնդեղ ու խոտ հավաքող, ցանող, տնկող ու հատիկ զտող մեքենաներ և այլ գործիքներ: Կոլխոզային դաշտերում մեծ մասամբ գործածվում են տրակտորաքարշ գութանները: Ստալինեց—80 տրակտորը քաշում է Ռոստսելմաշի հինգ խոփանի երեք գութան և մի օրում վարում է մոտ 25 հեկտար հողամաս: Այդքան հող վարելու համար հարյուրից շատ եզ էր հարկավոր:

Բարձր բերք ստանալու համար կարևոր է խնամքով կատարված ցանքը: Այս գործում էլ կոլխոզնիկներին օգնության են հասնում Ռոստսելմաշի հրաշալի շարքացանները: Նրանք կրճատում են ցանքի ժամկետները և խնայում թանկարժեք սերմացուն:



Ռոստսելմաշի արտադրած հատիկ զտող ու տեսակավորող մեքենաներից ամենալավը «ՎԻՄ»-ն է, որը զտում է ցորենի, տարեկանի, գարու և վարսակի սերմերը: Ռոստսելմաշն արտադրում է նաև հատիկ տեսակավորող քամհար մեքենա և ձեռքի տրիերներ: Սակայն այս մեքենաներով բարձրորակ սերմացու ստանալու համար, պետք է սերմը անցկացնել մի քանի մեքենաների միջով: Սա դանդաղեցնում է աշխատանքը և կորուստներ առաջացնում:

ՎԻՄ-ը այս թերությունը չունի: Նա հատիկը լրիվ մաքրում է մոլախոտերի սերմերից, խառնուրդներից և միանգամայն պիտանի դարձնում: Այդ է պատճառը, որ նա շատ տարածված է մեր գյուղատնտեսության մեջ:

Ռոստսելմաշի հռչակը տարածված է ամբողջ աշխարհում. նա մեր գյուղատնտեսական մեքենաշինության պարծանքն է:

*Դ. ԴԱՁԱՁՑԱՆ*




Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

Ես ներկա եղա մի քանի ջոկատի հավաքույթներին։ Նրանց թեմաները հետաքրքրական էին, բայց պետք է ասել, որ ժամանցի բաժինն այնքան էլ լավ չէր կազմակերպված։ Եվ ես որոշեցի այդ գործում նրանց օգնել։

Երգից, պարից արտասանությունից բացի ժամանցին կարելի է կազմակերպել նաև ուրիշ զբաղմունքներ։ Օրինակ՝ լավ կլինի եթե մի պիոներ առաջարկի այս ռեբուսը՝

«'Դեղ 'գիրք' ուս մազ' ն գերան' Ձ 'ցանց ''ցից' կոչ''»



Փորձեցեք կարդալ այս ռեբուսը։

Ջոկատի հավաքույթում կարելի է կազմակերպել զվարճալի հարց ու պատասխաններ։ Օրինակ՝ ուսուցիչը աշակերտին հարցնում է.

— Ամռան օրերը ինչու՞ են երկար լինում։

Աշակերտը պատասխանում է.

— Տաքությունից լայնանում են։

Կարելի է պիոներներին հետաքրքիր հանելուկներ էլ առաջարկել. Ջոկատի լավ արտասանող, նվագող պիոներների ուժերով գրական-երաժշտական հարց ու պատասխան կազմակերպել։

Ժամանցին կարելի է ասել շուտասելուկներ, լուծել թվաբանական, երկրաչափական փոքրիկ խնդիրներ։

Այժմ փորձեցեք լուծել այս խնդիրը.

Պահակապետին հանձնարարվում է մի պահեստի պաշտպանությունը։ Նա սկզբում իր 12 պահակներին դասավորում է այսպես՝

Հետո մտածում է՝

Չի՞ կարելի արդյոք պահակներին դասավորել այնպես, որ պահեստի ամեն կողմը չորս, հինգ և նույնիսկ վեց մարդ կանգնի։

Մտածում է և այդպես էլ անում։

Դուք էլ փորձեցեք այդպես դասավորել պահակներին։

Հավաքույթներում կարելի է զբաղվել նաև այսպիսի խնդիրներով։ Օրինակ՝ այս գծագիրը բաժանեցեք հինգ մասի և դասավորեցեք այնպես, որ քառակուսի ստացվի։



կամ.

Այս կիպ սեղմված փայտե դետալները շրջանակի մեջ են մտցված վերևից։ Դրանք շրջանակից պետք է հանել հետևյալ պայմաններով՝ 1) շարժել կարելի է միայն մեկ-մեկ և դեպի ազատ կողմը, 2) այդ ժամանակ մյուս դետալները շարժել չի կարելի։

Մտածեցեք և ասեք, թե դետալներն ինչպիսի հերթականությամբ են հանվում շրջանակից։

Ժամանցի խելացի կազմակերպումը շատ կաշխուժացնի ջոկատի հավաքույթը։





Որսորդը փնտրում է աղվեսին. օգնեցեք նրան՝
գտնել այդ կենդանուն։

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

1. Խաղաղություն — Հ. Շիրազ
2. Ողջույն Սովետական Վրաստանին . . 2
3. Առաջավոր ջոկատի հավաքույթը — Բ. Սեյրանյան . 3
4. Մտերմության նամակներ . . . . 8
5. Եղբայրություն — Գ. Կաճախիձե . . 10
6. Փետրվարյան առավոտ — Հռ. Պողոսյան . 10
7. Անմահություն — Ստ. Կուրտիկյան 11
8. Ամենալավ նվերը — Հր. Հովհաննիսյան . . 14
9. Այսպես է սկսվում խիզախումը . . 15
10. Մոնումենտը — Ս. Հովսեփյան . . . 18
11. Անմոռանալի հանդիպում — Գ. Սեվունց . . 19
12. Պիոներական ջոկատներում և դրուժինաներում . . . . . . . . . . 22
13. Շնորհակալություն — Ալ. Ջակ . . . 23
14. Ռուս մեծ գիտնական Պավլովը — Լ. Մատինյան . . 24
15. Վերադարձ — Սարմեն . . . . . . . 26
16. Հարյուր երեսուն տարի առաջ — Ար. Օհանյան . . 26
17. Գիդանտ գործարանը — Դ. Գազազյան . 29
18. Ժամանց — Վ. Պետրոսյան . . . 31

Շապկի առաջին էջում՝ «Հանդիպում Գորիում»
Գործ Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ և Ա. ԴԱՎԹՅԱՆԻ

## ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

### „ՊԻՈՆԵՐ" ԱՄՍԱԳՐԻ 1951 ԹՎԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

1 տարին 24 ռուբ.

6 ամիսը 12 ռուբ.

3 ամիսը 6 ռուբ.

### ՇՏԱՊԵՑԵՔ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵԼ

*

„ПИОНЕР"
№ 2
ЖУРНАЛ ДЛЯ ПИОНЕРОВ И ШКОЛЬНИКОВ
Орган ЦК ЛКСМ Армении
Год издания 23-ий, февраль, 1951 г. Ереван

Պատ. խմբագիր ԳՈՒՐ. ՍԵՎՈՒՆՑ

Խմբագրական կոլեգիա՝ ՍԻՄԱԿ, Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ, Գ. ՀԱԿՈԲՅԱՆ, Ս. ՕՀԱՆՅԱՆ Վ. ԱՆԱՆՅԱՆ, Վ. ԲԱԲԱԽԱՆՅԱՆ, Վ. ՏԱԼՅԱՆ, Է. ՍԻՄՈՆՅԱՆ, ՀՐ. ԲԱՏԻԿՅԱՆ, Է. ԻՍԱԲԵԿՅԱՆ

Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06
ՎՖ 00584, Պատվեր 120. Տիրաժ 5000 Տպագրական $2^1/_4$ մամուլ. Հեղինակային 2 մամուլ. 1 մամուլում 45.200 տպ. նիշ: Արտադրության է հանձնված 27/I—51 թ.: Ստորագրված է տպագրության 19/II—51 թ.:

Հայպոլիգրաֆհրատվարչության № 1 տպարան, Երևան, Ալավերդյան փ. № 65, 1951 թ.:

ԳԻՆԸ 2 Ռ.

# Ձ Մ Ե Ռ



Լուսանկար՝ Ա. ԷԿԵԿՅԱՆԻ